# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 86•3



*Հանձնված է տպագրության 26.XII.1985 թ.: Ստորագրված է տպագրության 5.III.1986 թ.: ՎՖ 05299: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69532: Պատվեր 2854: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 26.XII.1985 г. Подписано к печати 5.III.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 05299. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69532. Заказ 2854. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

# Այս տարի փետրվարի 25-ին բացվեց ՍՄԿԿ XXVII համագումարը



ԱՅՍ ՏԱՐՎԱ ՓԵՏՐՎԱՐԻ 25-ԻՑ ՄԻՆՉԵՎ ՄԱՐՏԻ 6-Ը ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ:

ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԵԿՈՒՑՈՒՄՈՎ ՀԱՆԴԵՍ ԵԿԱՎ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԸ:

ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ԿԱՐԴԱՑՎԵՑԻՆ ՆԱԵՎ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐ ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ, ՍՄԿԿ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԻՆՉՊԵՍ ՆԱԵՎ ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1986—1990 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ՄԻՆՉԵՎ 2000 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ՀԵՌԱՆԿԱՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ: ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ՔՆՆԱՐԿՎԵՑԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԸ ԷԼ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ:

ԲԱՑԻ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻՑ, ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԷԻՆ ՀՐԱՎԻՐՎԵԼ ՆԱԵՎ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲԱԶՄԱԹԻՎ ԵՐԿՐՆԵ-




ՆԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ, ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏՎԻՐԱԿՆԵՐ։ ԱՅԴ ՄԵԾ ՀԱՄԱԺՈՂՈՎՈՒՄ ՔՆՆՎԵՑԻՆ ՈՉ ՄԻԱՅՆ ՄԵՐ ԵՐԿՐԻՆ ՎԵՐԱԲԵՐՈՂ ՔԱՂԱՔԱԿԱՆ, ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ, ԱՅԼԵՎ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ՀԱՄԱՐ ԿԵՆՍԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ։ ԴՐԱՆՑԻՑ ԱՌԱՋՆԱԳՈՒՅՆՆ ԷՐ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՐՑԱՎԱԶՔԻ ԴԱԴԱՐԵՑՄԱՆ ԽՆԴԻՐԸ, ՈՐԸ ՄԵԾ ՋԵՐՄՈՒԹՅԱՄԲ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆ ԳՏԱՎ ՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ։ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ՊԵՏՔ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻՆ, ՄԱՆԱՎԱՆԴ ՀԻՄԱ, ԵՐԲ ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆ ՀԱՍԵԼ Է ԱՅՆՊԻՍԻ ՎՏԱՆԳԱՎՈՐ ՉԱՓԵՐԻ, ՈՐ ՍՊԱՌՆՈՒՄ Է ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԳՈՅՈՒԹՅԱՆՆ ԱՌՀԱՍԱՐԱԿ։ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ ՄԻ ԱՆԳԱՄ ԵՎՍ ՊԱՅՔԱՐԻ ԿՈՉ ԱՐԵՑ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՐՑԱՎԱԶՔԻ ԴԵՄ, ՄԻ ԱՆԳԱՄ ԵՎՍ ՀԱՎԱՍՏԵՑ, ՈՐ ԻՆՔԸ ԵՐԲԵՔ ԱՌԱՋԻՆԸ ՉԻ ՕԳՏԱԳՈՐԾԻ ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՋԵՆՔԸ։

ՎԱՀԱՆ ԹԱՄԱՐՅԱՆ

# Ո՞րն ես դու, մայրիկ

Մորս՝ Միրուն Թամարյանի հիշատակին

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ես տատիս թևերից իջա այնպես, ինչպես ուրիշները օրորոցից են իջնում: Իջա, վախվըխելով երկու քայլ արեցի, երրորդ քայլն անելիս պթոռն ինձ հրեց:

— Վո՜ւյ, քոռանամ,— առաջ գալով՝ ինձ գետնից վերցրեց տատս:

Ես նրա թևերի վրա լաց եղա ու խռովեցի պթոռից: Այդ պահին դրսում հաչում էր մեր բակի շունը, ես ճանաչում էի նրա ձայնը և ուրախացա:

— Ա՜ֆ, ա՜ֆ,— ասացի տատիս և ձեռքս երկարեցի դեպի դուռը:

— Ցուրտ է: Ուտո՜ւ, շատ ցուրտ է,— ասաց տատս:

— Ա՜ֆ, ա՜ֆ,— ճչալով առաջ մղվեցի ես:

— Ձմեռ է, ախր, բուք է, բո՛ւք, քամին քեզ կքշի,— բացատրեց տատս:

Ես ցրտից ու բքից չէի վախենում և, որովհետև տատս այդ չգիտեր ու չէր էլ ուզում իմանալ, նոր ուժով լաց եղա:

— Էէ՜է,— բարկացավ տատս,— կայծ ու կրակ երեխա ես... Էս ցրտին ես քեզ ո՞ւր տանեմ,— և բրդե շալն առավ ուսերին:— Գնամ, տեսնեմ հայրդ ի՞նչ բանի է,— ու գնաց:

— Ա՜ֆ, ա՜ֆ, ա՜ֆ,— կանչում էր դրսից շունը:

Բուխարիկում դանդաղ մխալով այրվում էր թաց փայտը, ձյուների մեջ գլուխկոնծի էր խաղում քամին: Պատի ետևից հայրս բղավում էր.

— Իմ գործերին չխառնվե՜ս:

— Քո գործերն ինձ պետք չեն: Ասում եմ՝ կովն ուրիշին տալուց ի՞նչ օգուտ, ուրիշին ինչո՞ւ տաս, ինձ տուր, վախենում ես, թե կաթը ե՞ս կուտեմ, չէ՛, չէ՛, երեխադ է ուտելու, երեխա՜դ,— նախատում էր տատս:

Դուռը դանդաղ ետ գնաց, երևաց քույրս՝ հաց ու պանրի բրդուճ ծամելով: Նա փնթփնթալով մոտեցավ ինձ.

— Էլի սկսեցի՛ն...

— Հա, բերելու եմ, բա էնպես հո չեմ մնալու... Չեմ հասկանում, թե քո ուզածդ ի՞նչ է,— նորից բղավեց հայրս:

— Ես ուզում եմ, որ տունդ մտնողը շենք ու շնորհքով լինի...

— Ինչո՞ւ են կռվում, ախր, ինչո՞ւ են կըռվում... հաց տա՞մ,— լացի արանքից հարցրեց քույրս ինձ:

— Թո՛ւ,— պատից այն կողմ թքում էր հայրս:

— Քոնը թքելն է, թողնեն միայն թքես,— իր հերթին բղավում է տատս:

Ես ամբողջ մարմնով առաջ եմ մղվում, փորձելով հասնել ետ-ետ գնացող քրոջս: Ես դեպի ինքն եմ գնում, ինքը՝ ետ-ետ:

— Զգույշ՝ չգցես, աղջի,— հայրս է, որ անընկատ ներս մտնելով, թթված նայում է քըրոջս, ինձ: Այդպես թթված ես նայում եմ շշին, երբ դատարկ է, իսկ ես՝ սոված, այդպես նայում եմ տատիս և բոլոր նրանց, ովքեր բղավում են, այդպես նայեցի պթոռին, երբ ինձ հրեց ու գցեց մեր տան հողե հատակին:

— Տատի,— ասում եմ ու նայում դրան կողմը:

— Հիմա կգա,— ավելի է թթվում հայրս:

Անսպասելիորեն հայտնվում է հորաքույրս և վրա քշում հորս.

— Մորս հետ ինչո՞ւ ես կռվել,—բղավում է:

— Մեջ չընկնե՛ս,— ատամների արանքից նետում է հայրս և դուրս գնում: Դուռը շըրխկոցով փակվում է:

— Ըհ՜ը, էլի շրը՜խկ: Մենակ մի բան լավ գիտի՝ դուռը շրըխկ՝ երեսներիս խփի ու գնա,— կարմրատակում է հորաքույրս:

Ես իզուր իջա տատիս գրկից: Հիմա իջել եմ ու ելնել չեմ կարողանում, չնայած շուրջս կատարվող ամեն ինչը հասկանում եմ կովից, մոզից, հորթից մի քիչ շատ:

— Չէ, Երվանդ ջա՛ն, լաց չլինես, ես քեզ իրենց ձեռքը չեմ տա: Պիտի մեծացնեմ, ու դու պապիդ պես տղամարդ պիտի դառնաս,—

ինձ սիրելու պահերին խոստանում է տատս:
Ես չգիտեմ, թե ինչպիսի տղամարդ էր պապս, բայց որ մեծանամ, անպայման նրա պես տղամարդ կլինեմ: Նա չկա ու չկա, հետաքրքիր է, թե ինչո՞ւ չի գալիս:
— Իսկական դդում ես,— բամփում է ինձ քույրս, որ արդեն մեծ աղջկա ձևեր է բանեցնում,— մեռած տեղից ո՞նց գա:
— Ծա՞ռ է հեռու,— հարցնում եմ:
— Ի՞նչը,— գլխի չի ընկնում քույրս:
— Պապիս մեռած տեղը շա՞տ է հեռու:
— Ծա՜ռ,— ձեռքը դեպի աշխարհի ծայրն է մեկնում քույրս:
Աշխարհի ծայրն ինձ համար մեր սարերն են: Սարերից այն կողմ դատարկ է, ամպով լցված դատարկություն է: Հիմա ես մի քիչ մեծ եմ և այդքանը լավ եմ հասկանում:
—Սարերից այն կողմ էլի սարեր են, մարդիկ, արտեր, քաղաք, ծառ,— ասում է քույրը:
Հորաքույրս ծառերի մասին հեքիաթ է պատմում՝ ասում է.
— Եվ հետո ծառերը մեզանից խռովեցին և մեր սարերից հեռացան: Մեր սարերը մնացին առանց ծառ, մեր ժողովուրդը մնաց առանց անտառ: Այդքանից հետո, Երվանդ ջան, դու ծնվեցիր,— հորաքույրս էլի ինչ-որ բան է ուզում ասել, բայց քույրս մեջ է ընկնում՝
— Սխալ ես պատմում: Այդ հեքիաթն այդպես չէ՝ մարդիկ ծակաչք էին, այնքան ծակաչք էին, որ կտրեցին բոլոր ծառերը, դրա համար էլ, այդ իսկ պատճառով էլ,— քույրս չի ուզում ճարտասանություն ցույց տալու առիթը բաց թողնել,— ծառ չմնաց, և մեր սարերը մերկացան ու ծածկվեցին քարերով, որովհետև կռնղերը քար դարձան: Գազաններր խիստ բարկացան մարդկանց վրա, ու մեր սարերը թողին, գնացին ուրիշ-ուրիշ տեղեր, ուր որ անտառ կա... այ, այսպես է եղել, Երվանդ ջան: Եվ երբ դու ծնվեցիր, մեր սարերում արդեն ծառ չկար:
Ես, տատիս ծնկներին բազմած, մեծավարի տմբտմբացնում եմ գլուխս, իսկ տատս տանձ էր կշռում.
— Մա՛, չքնես,— տատիս ուսն է ցնցում հորաքույրս:— Մայրիկ, մի քնիր:
Ես էլ որ մայրիկ ունենամ, ուսը կցնցեմ ու կասեմ՝ մա՛, մայրի՛կ, մի քնիր, չքնես, բայց առայժմ չունեմ: Հենց որ ունենամ՝ կտեղափոխվեմ նրա ծնկներին, և իմ աշխարհը կմեծանա, ամեն ինչ կերևա, նույնիսկ քրոջս աշխարհը, որ շարունակվում է մեր սարերից այն կողմ:

— Պապդ սարի պես մարդ էր,—ախ քաշելով ասում է տատս:
Ես փորձում ու չեմ կարողանում պատկերացնել, թե սարի պես իմ պապը ինչպե՞ս է ներս մտնելու մեր դռնից, երբ մեր տունը սարի կեսի չափ էլ չկա: Ա՛յ թե պապ է, ուսին նստես ու ամպերին հասնես:
— Տատի, պապիս ուսին որ նստեմ, ձեռքս աստղերին կհասնի՞,— հարցնում եմ ես:
— Կհասնի,— պատասխանում է տատս:
— Ֆանտազյորներ,—փոթկացնում է քույրս:
Այսպես ամսեամիս, տարեցտարի ես մեծանում էի, և մեր տան հենասյուներից մեկի վրա դանակով փորված խազերը ավելանում էին, մագլցում սյունն ի վեր: Ես խազերի հսկողությամբ բարձրանում էի ու խազ առ խազ մեծացնում իմ աշխարհի սահմանները: Ես ուրախ էի, որ մեծանում եմ և արդեն գիտեի, որ մեր սարերից այն կողմ լույսերի մեջ կորած քաղաքներ կան, քաղաքներում ապրում են երեխաներ, որոնք հացի փոխարեն միայն պաղպաղակ ու շոկոլադ են ուտում, հագնում կարմիր կոշիկներ և այնքան խաղալիք ունեն, որ մի պայթած փուչիկի կամ ծակված գնդակի համար օրերով չեն տխրում:
— Իրենց մայրիկների հետ գնում են այգի, կարուսել նստում, փայտե ձի նստում,— պատմում է քույրս:
— Ես էլ կգնամ,— ասում եմ:— Պաղպաղակ ու շոկոլադ կուտեմ: Մայրիկիս ձեռքը բռնած կգնամ:
— Ե՛ս կտանեմ,— ասում է հայրս:
— Չե՛մ ուզում,— ըմբոստանում եմ ես:
— Ե՛ս կտանեմ,— ձեռքը գլխիս դնելով, ժպտում է հորաքույրս:
— Ե՛ս կտանեմ...
— Չե՛մ ուզում,— ճչում եմ ես:
— Բա ո՞վ տանի,— շուրթերը սեղմելով հարցնում է հայրս:
Բոլորը հասկանում են, թե ինչ եմ ուզում:
— Քեզ համար որտեղի՞ց մայրիկ գտնենք, հը՞, որտեղի՞ց գտնենք,— բղավում է քույրս. հիմա նա լաց կլինի:
— Երվանդիս համար գնդակ եմ առնելու,— խոստանում է հորաքույրս:
— Մոնպասյե եմ տալու...
— Սահնակ եմ շինելու...
— Հեքիաթ եմ պատմելու...
— Չե՛մ ուզում,— ոտքս գետնին խփելով ճչում եմ ես:
— Հրացան կտամ,— հայրս ծուռ-ծուռ նայում է ինձ ու մի կերպ ժպտում:
— Իմ հրացանը կտամ՝ մի քիչ կխաղաս, հը՞:



Տատս, հորաքույրս, քույրս մի անկյուն են քաշվում ու քիթ-քթի տված արտասվում են:

— Ձայներդ կտրե՛ք, էլի սկսեցին տզզալ,— սաստում է նրանց հայրս և, ծխախոտ վառելով, դուրս գնում: Դուռը շրըխկ՝ փակվում է:

Օրերը գլորվում են իրար ետևից: Մեր տանը ոչինչ չի փոխվում, եթե չհաշվենք այն, որ ես օրն օրին մեծանում եմ: Ես այնքան մեծացա, որ մայրիկ չունենալն արդեն ամոթ էր: Երևի հայրս էլ էր ինձ պես մտածում, որ տատիս ու հորաքրոջս հետ կռվելիս ասաց.

— Երեխաներին վերցնելու եմ գնամ... ու վերջ...

— Երվանդին չեմ տա,— նրան ընդհատելով բղավում է տատս:— Մի բոստան տվեցի, մի կով տվեցի, հինգ ոչխար տվեցի, Երվանդիս չեմ տա:

— Ո՞նց չես տա, իմ եղբայրն է: Արի, Երվանդ ջան,— ինձ իր կողմն է քաշում քույրս:

Հորաքույրս խփում է նրա ձեռքին և բղավում:

— Հայդա, կորի՛, երես առած: Մի անգամ քիթը սրբած կա՞ս, որ տանում ես՝ եղբա՜յրս է: Չգնաս, Երվանդ ջան, ես քեզ աչքիս լույսի պես կպահեմ:

Հայրս հուսահատությունից գլուխը կորցրել է:

— Երվանդը պիտի մնա՛, հայրիկ: Պիտի մնա՞, հը՞,— հեկեկում է քույրս:— Ինչո՞ւ մնա:

— Գիտես ինչ էի ասել, հասա՛,— փըրփըրում է հորաքույրս ու ինձ ետ հրում:— Հայդա՛, գնա՛, վաղը-մյուս օրը քեզ համար մայրիկ կբերեն՝ հոգիդ կհանի:

— Թող փորձի՛,— հոխորտում է քույրս:

Ես կանգնել եմ իրենց արանքում, ու լացս չի գալիս, իսկ իրենք քաշում են, քաշում են... Ես հայտնվում եմ փողոցում և վազում եմ: Քամին թավալվում է շուրջս, ձյան ամպեր է շպրտում վրաս: Աչքերս ջրակալվում են: Վազում եմ ու դիմացս ոչինչ չի երևում, միայն քամին է, որ ցատկոտում է, «ու՜, բու՜, բուու՜» անելով գլորվում փողոցն ի վեր, ի վար, շուլալվում ոտքերիս ու սուլոցով խուժում ականջներիս մեջ:

... Հայրս ինձ գրկել ու տուն է տանում, իր ճմրթված թաշկինակով սրբում է թաց դեմքս ու լուռ քայլում: Ես հեծկլտալով նայում եմ նրան և զարմանում, թե ինչո՞ւ չի լալիս, երևում է, որ ուզում է ինձ պես, ինձանից էլ բարձր ձայնով հեկեկալ, բայց լուռ քայլում է:

Տատս, քույրս, հորաքույրս բակում կողքկողքի շարված կանգնել ու մեզ են սպասում: Քամին թզնում է նրանց արցունքները և փոխարենը դեմքերին ձյան փաթիլներ ծեփում:

●●●

Երեկո է: Մեկը մյուսի ետևից վառվում են բոլոր լամպերը: Ամենալուսավորը մեր տունն է, որովհետև առաջ նավթավառը հաճախ էր թողնվում մրի ու խավարի մեջ, ո՞վ սիրտ ուներ լամպի ապակի մաքրելու, տուն սրբելու, նույնիսկ՝ եփութափի:

Մեր տան հիմիկվա լռությունը սկիզբ է առնում ինձանից և շարունակվում խաղաղության միջով՝ դեպի փողոց և ավելի հեռու...

— Ի սեր Երվանդիս՝ բերանս ու՜ս,—ինքն իրեն համոզելով, տոտիկ-տոտիկ դեպի հաշտություն էր գնում տատս:

Հորաքույրս.

— Երվա՜նդս, Երվա՜նդս,— և ձեռքերով ծածկում է բերանը:

— Աստված ջան, ի՞նչ կլինի, որ հաշտ լինեն,— մեծավարի մրմնջում է քույրս և հոնքերը վրա բերած սպասում այն կնոջը, որ միշտ ապրելու է մեր տանը և, ասում են, մեր լավ մայրն է լինելու:

Քույրս շուտ հավատացողներից չէ, համառ է:

Ասում է.

— Հանկարծ Երվանդիս չկպնի՞, թող փորձի կպնե՜:

— Ես մեռա՞ծ եմ, որ կպնի,— իր հերթին թիկունք է կանգնում ինձ տատս:

— Բա ես,— հոխորտում է հորաքույրս:

Հայրս կնոջը, որին բերելու է, նախօրոք ասել է.

— Տես, հա՛, Երվանդը մեր պահած, թանկ պահած,— ինքն իրեն ճշտում է,— երեխա տղան է, նրան մատով կպար՝ պրծա՜վ...

Հենց երկրորդ օրվանից մեր մայրը, ես ի՞նչ գիտեմ, այդպես են ասում, ստիպեց, որ տատս, հորաքույրս, քույրս իրենց գրաված գրոհային դիրքերից մեկ քայլ նահանջեն: Նա նախ ավլեց մեր տան հողե հատակը, ավլելուց առաջ ջուր ցանեց, որ փոշի չլինի: Այս բանը քույրս շարունակ մոռանում էր: Հետո ինձ լողացրեց, հետո մեզ համար ճաշ եփեց, և ինքը թևերը կրծքին ծալած, խոնարհ ըսպասումով կանգնեց մի անկյունում:

Գիշերը քաղցր խոսքեր ասելով՝ ինձ իր ծոցը տարավ: Մերոնք, որ հավանաբար վերմակների տակից ծիկրակելիս կլինեին, տեսան: Առավոտ քույրս դեռ չհամակերպված հայացքով էր նայում մեր մորը, որ բերվել էր հատկապես ինձ համար:

Ես քիչ-քիչ, քայլ առ քայլ մոտենում էի նրան և փորձում հպվել փեշերին, որովհետև նրանից դուրեկան, անսովոր բույր էր ինձ հասնում: Քույրս, եթե մի քիչ էլ մեծ լիներ, գոնե իր երևակայածի չափ, կասեր՝ մոր բույր է:

Հիմա մեր տունը խաղաղության ամենաճիշտ տեղն է: Ես, մերոնց նահանջելու հետ, խաղաղությունն ուսերիս առած, ձգվում ու ձգվում եմ, ինչպես մեր տան սյուներն են՝ հայացքները տան բարձրում, մարմինները՝ ուղիղ և համերաշխ:

**ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ**

# ԵՂԵԳՆԱՁՈՐ

Եղեգնաձորում, հենց ավտոբուսից իջար, դիմացդ մեր ապուպապերի մանրանկարներում պատկերված դեմքերի պես մի քանիսը կտեսնես: Միջնադարյան նշանավոր համալսարանի՝ Գլաձորի ուսուցչապետ Եսայի Նչեցու դիմաքանդակն է: Այս շրջանում են գործել գրչության բազմաթիվ օջախներ, ծաղկել հայկական ճարտարապետությունն ու դպրությունը: Շրջանում 500-ից ավելի ճարտարապետական հուշարձան կա: Այս մասին են հիշեցնում Եղեգնաձոր ավանի շենքերի ճակատները զարդարող մանրանկարների դեկորները և Մոմիկի անվան իսկապես որ հիանալի զբոսայգին: Վերջին տարիների Եղեգնաձորի լեռներում հայտնաբերեցին ստալակտիդային բազմաթիվ անձավներ, որոնք աշխարհում հազվագյուտ են իրենց գեղեցկությամբ: Եղեգնաձորի շրջանում ապրում են մոտ 3500 մարդ, ունի 36 գյուղ, 32 դպրոց, բազմաթիվ մանկապարտեզներ, երկրագիտական ու Գլաձորի համալսարանի սակավաթիվ նյութերի վրա հիմնված թանգարան, մանկական գեղարվեստի ու երաժշտական դպրոց և այլն: Եղեգնաձորը լեռնային շրջան է, սակայն ցածրադիր վայրերում կողք-կողքի աճում, հասունանում են թե՛ լեռնային և թե՛ հարթավայրային պտուղներ ու բանջարեղեն:

## ԳԼԱՁՈՐԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

Որ Եղեգնաձորում համալսարան է եղել ու անունն էլ Գլաձոր՝ գիտնականները իմացան հին-հին մատյաններից: Ճիշտ է, համալսարանի տեղը չգտան, բայց ըստ մատյանների հայտնած տեղավայրի համարեցին, որ համալսարանը գործել է Թանահատի Սուրբ Ստեփանոս վանքին կից՝ 1280-ից 1338 թվականներին: Հիմնադիրները համալսարանի դասախոսներից էին՝ Ներսես Մշեցին և Եսայի Նչեցին:

Պահպանվել են որոշ դասագրքեր, որոնցով սովորել են համալսարանի ուսանողները: Դասագրքերը պահվում են Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում: Գլաձորի համալսարանում դասավանդել են բժշկություն, աստղաբաշխություն, երաժշտություն, մաթեմատիկա, նկարչություն, պատմություն և այլ գիտություններ: Գլաձորում շատ էր հարգի գրչությունը. այստեղ արտագրել և ծաղկել են բազմաթիվ գրքեր: Համալսարանը լայն ճանաչում է ունեցել: Ժամանակակիցները այն համարել են «Երկրորդ Աթենք պանծալի», «Մեծ դպրատուն», «Հռչակավոր համալսարան», «Մայր իմաստության Գլաձոր» և այլն:

Համալսարանը 360 շրջանավարտ է ունեցել, որոնք հետագայում տարբեր վայրերում բացել են նոր կրթօջախներ:

Գլաձորի համալսարանի հիմնադրումից 700 տարի է անցել: 1984 թվականին ՅՈՒՆԵՍԿՕ-ի որոշմամբ տոնվեց նրա 700-ամյակը: Սովետական Հայաստանում պանծալի հոբելյանի տոնահանդեսները



անցան մեծ շուքով, Սովետական Միության այլ հանրապետություններից և աշխարհի տարբեր երկրներից ժամանած բազում հյուրերի մասնակցությամբ, որոնք անմոռանալի տպավորություններ տարան իրենց հետ:

## ՃԱՄԲԱՐԸ ՊԼԱՆԻ ՏԱԿ Է

«Մենք հիմա դեռ փոքր ենք,
դեռ նոր ծիլ ենք,
Մենք փոքրիկ աղբյուր ենք,
բայց կան ծովեր...»

Երգում են «Գառնու» ճամբարի երեխաները: Բոլորն էլ փոքր են, իսկապես որ՝ ծիլեր, իսկապես որ՝ աղբյուրակներ, մեծերը հազիվ երրորդ դասարանցի լինեն, անուշակ ձայներ ունեն ու գեղեցիկ աչքեր: ««Գառնու» պիոներական ճամբար» ցուցանակը փակցված է Անահիտ Հակոբյանենց այգու ցանկապատին: Ցանկապատի մոտ երեք մետր բարձրությամբ ցցեր են՝ ճառագայթաձև տարածված թելերով, թելերին՝ թղթից պատրաստված բազմաթիվ դրոշակներ: Դրուժինայի դրոշի փոխարեն էլ օդում փողփողում է մի կարմիր փողկապ...

Բակային ճամբարներ կառուցվում են կոմերիտմիության շրջկոմների հովանավորությամբ, իսկ «Գառնու»-ի հովանավորողները Անահիտի ծնողներն են, քույրն ու եղբայրը:



Հարևան թաղի չար տղաները հին, անգամ գիշերով եկել, քանդել էին ճամբարը: Առավոտյան արցունքն աչքերին երեխաները հավաքվում էին Անահիտի շուրջ ու նրանց տնեցիների, հատկապես եղբոր հետ, կրկին սկսում կառուցել: Գիշերային արշավանքները ավարտվեցին նրանով, որ ճամբարականները իրենց «թշնամիներին» խնդրեցին քանդելու փոխարեն գալ, մասնակցել միջոցառումներին: Ճիշտ է, սևերես էին, չերևացին, բայց, այնուամենայնիվ, ճամբարը կան-

գուն մնաց: Եթե նրանց թաղերում էլ Անահիտի նման մեկը լիներ, գուցե նրանք փոքրիկներին այդքան չդառնացնեին:

Անահիտի հայրը վարորդ է, հաճախ իր մեքենայով երեխաներին տանում է շրջագայելու: Մայրը նույնպես հովանի է ճամբարականներին, մասնակցում է նրանց էքսկուրսիաներին: Նրանք եղել են Նորավանքում, Գլաձորում (Թանահատի վանք), «Գոավ» կոչվող բուժիչ աղբյուրավազանում, տեղի թանգարանում, պատկերասրահում, կուլտուրայի տանը և այլուր: Քույրը՝ Կարինեն, ճամբարի պատի թերթերն է ձևավորում, օգնում Անահիտին ծրագրերը կազմելիս, իսկ ծրագրերը բազմազան են... Սպորտլանդիաներ, սանիտարական ժամ, հեքիաթների ընթերցում, կինոդիտումներ, նկարչության մրցույթ, տիկնիկային թատրոնի ներկայացումներ (տիկնիկներն էլ իրենք են պատրաստում): Միայն մի բան է վատ, ճամբարը այսպես ասած՝ պլանի տակ է: Գլաձոր տանող նոր ճանապարհըն այստեղով է անցնելու, և ասֆալտն օր-օրի սպառնագին մոտենում է ու մոտենում: Կարծում ենք, շրջանի հարգելի ղեկավարները մի փոքրիկ հողակտոր կըտրամադրեն ճամբարին: Մնում է ավելացնել, որ մեր սիրելի Անահիտը 9-րդ դասարանի աշակերտուհի է, սովորում է Եղեգնաձորի № 1 դպրոցում: Նրա ջանքերն իր ինքնաշեն ճամբարում լավ պըտուղներ են տալիս... Ես ներկա էի Անահիտի սանիկների թատերական ելույթներին, բեմադրեցին «Քաջ Նազարը», «Անխելք մարդը», «Չախ-չախ թագավորը», «Կիկոսի մահը», և մի քանի այլ ներկայացումներ: Ողջ թաղն էր հավաքվել, պատերազմի վետերաններ էլ կային... Բոլորը գոհ էին, խանդաղատանքով ու սիրով լեցուն երեկո էր... Շնորհակալություն քեզ, Անահիտ Հակոբյան, շնորհակալություն ծնողներիդ, քույրիկիդ ու եղբորդ, ձեր գեղեցիկ նախաձեռնության համար:

## ՄԵՆՔ ԲՈԼՈՐՍ ԲՆՈՒԹՅԱՆ ԶԱՎԱԿՆԵՐՆ ԵՆՔ

Այդ տարի Եղեգնաձորում խիստ ձմեռ եղավ: Ձյունը եկա՜վ, եկա՜վ, դիզվեց ու մի օր էլ չափեցին-տեսան՝ հաստությունը երկու մետր ու կեսի է հասել: Անտառի կենդանիների, մանավանդ թռչունների համար դժվարին դրություն ստեղծվեց: Արջը, գայլը, քարայծը և մյուսները բույն ու որջ ունեին, քիչ թե շատ կարող էին դիմանալ, բայց թռչունները, որոնց բները ծառերի վրա էին ու թփերի մեջ, և առաստաղը բաց երկինքն էր, տեղացող ձյան պատճառով լքեցին փաթիլների տակ անհետացող բներն ու թռան հաստատուն մի տեղ փնտրելու: Համատարած սպիտակ փափկության մեջ միակ հաստատուն տեղերը անընդհատ մաքրվող ճանապարհներն էին, սակայն այստեղ էլ կեր չգտնելով, խեղճ թևավորները սառչում-մնում էին: Ճանապարհների եզրերը լիքն էին նրանց սառած մարմիններով: Կաքավների համարյա 95 տոկոսը ոչնչացավ: Անտառի բնակիչները նոսրացան: Սարերից ձյունահոսքեր իջան՝ ճանապարհին թուփ ու ծառ տապալելով: Հետո օրերը տաքացան, ու ջրհեղեղը մեծ-մեծ քարեր բերեց, լցրեց Եղեգիս գետը: Այգիները շատ վնասվեցին: Միայն վաղ գարնանը անտառտնտեսությունը կարողացավ օգնության հասնել անտառի բնակիչներին: Անտառը բաժանեցին գոտիների: Սկսեցին կերակրել քաղցած կենդանիներին: Անտառից երեք հեկտար տարածություն էլ հատկացվեց «Անահիտ» ճամբարի պիոներներին: Նրանք քաղցած թևավորների համար շաղ տվեցին երկու պարկ հատիկ, քարայծներին, վայրի ոչխարներին և մյուս խոտակեր կենդանիներին խուրձ-խուրձ կեր բաժանեցին: Անտառը ողողելու համար անցած տարի նրանք առու էին բացել: Այս տարի ամբողջ առուն մաքրեցին, կարգավորեցին, հավաքեցին այս ու այն կողմ թափթփված չորացած ճյուղերը: Ամռանը ճամբարականները մի անգամ, երբ արշավի էին գնացել, քարայծների ընտանիք տեսան՝ հայրն ու մայրն էին՝ չորս ուլիկների հետ: Իջել էին գետից ջուր խըմելու: Հանդիպում էին նապաստակներ, ոզնի՝ ձագերի հետ, սկյուռներ, վայրի խոզեր: Մի անգամ էլ մոտ 100—150 մետրի վրա արջ տեսան. քոթոթի հետ սարն էր բարձրանում: Արջի հանդիպեցին նաև հետո, ջրամբարի մոտ: Գլոր-մլոր իջնում էր սարից, եկավ, հասավ ջրամբարին, թաթով պոկեց փականքն ու շարունակեց գլոր-մլոր իջնել: Դեռ երկար երևում էր դիմացի սարը բարձրանալիս: Ճամբարը միայն օձերից է զգուշանում, այնքան շատ են, որ ճամբարի շրջակայքում հատուկ սրսկումներ են կատարում նրանց հեռու քշելու համար:




Գիտնականների կարծիքով թռչունները հետնորդներն են ամենապարզունակ սողունների, որոնք օդ բարձրանալու փորձեր էին կատարում իրենց խիստ անհամաչափ թաղանթավոր թևերի օգնությամբ:

Ժամանակակից թռչունների տեսակները, ենթադրվում է, որ ծագել են 36—63 միլիոն տարի առաջ: Հնէաբան Բրոտկորբի վկայությամբ երկրագնդի վրա տարբեր ժամանակներում ապրել են 154 հազար թռչնատեսակներ, այսօր պահպանվել են դրանց ընդամենը 5—6 տոկոսը: Այսօր երկրագնդի թռչունների ընդհանուր թիվը հասնում է ավելի քան 100 միլիարդի, որը 25 անգամ ավելի է երկրի վրա ապրող մարդկանց թվից: ՍՍՀՄ-ի սահմաններում ներկայումս հանդիպում է աշխարհի թռչնատեսակների մոտ 9 տոկոսը, այսինքն՝ 700 տեսակից քիչ ավելի:

Հայկական ՍՍՀ-ի թռչնաշխարհը կազմում է մեր մոլորակի վրա տարածված թռչնատեսակների մոտ 4 տոկոսը, իսկ ՍՍՀՄ-ի տարածքում եղածի 40-ից ավելին: Սակայն մեր թռչնաշխարհի 67 տեսակներ, ցավոք, գրանցված են Կարմիր գրքում:

Կենսաբան Մարտին Ադամյանի «Հայաստանի թռչունները» գիրքը կօգնի ձեզ ոչ միայն ճանաչելու հայրենի բնաշխարհի թռչնատեսակները, այլև պահպանելու արդեն անհետացման եզրին հասած հազվագյուտ տեսակները:

Գրքում տրված են թռչունների հայերեն, ռուսերեն, լատիներեն անվանումներ, և զետեղված են նրանց գունավոր նկարները:

Հայաստանի թռչունները, գիտահանրամատչելի ակնարկ, դպրոցական միջին և բարձր տարիքի համար:
«Սովետական գրող» հրատարակչություն, Երևան—1985:
Գունավոր տպագրություն, տպաքանակ՝ 30000, 232 էջ: Գինը՝ 80 կոպեկ:

ԿՌՌՒՆԿՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔ

## Մոխրագույն կռունկ

Գեղեցիկ կեցվածքով, երկար ոտքերով թռչուն է, մարմնի ընդհանուր փետրավորումը մոխրագույն է, թևերի թափահարող փետուրները, կտուցը և ոտքերը սև են, գլխի վերևի մասում ունի կարմիր փետուրների հատված, քաշը՝ 3—4 կգ:

Հանրապետությունում համարվում էր բնադրվող, չվող թռչուն: Նախկինում տարածված էր Սևանա լճի ավազանում, ներկայումս բնադրվում է միայն Կալինինոյի, առանձին դեպքերում՝ Ստեփանավանի և Ղուկասյանի շրջանների ճահճուտներում: Չափազանց փոքրաքանակ է, համարվում է անհետացող տեսակ: Բնադրվում է առանձին զույգերով: Ձվադրվում է ապրիլ-մայիս ամիսներին, դնում երկու խոշոր, գորշագույն կամ ձիթապտղագույն, մուգ պտերով ձվեր: Չափազանց զգույշ թռչուն է, վտանգի դեպքում աննկատ հեռանում է բնից, ձայնը սուր է և զրնգուն՝ աղեկտուր երանգով: Թռիչքը սահուն է, դանդաղ ու թեթև, ձգված պարանոցով և դեպի պոչը տարածած ոտքերով:

Գրանցված է հանրապետության Կարմիր գրքում:

**ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ**

### ԵՐԿԵՐԵՍԱՆՈՒԹՅՈՒՆ

Աղջիկը նստած է շարքի առաջին նստարանին: Նրա ընկերուհին, ահա, դաս է պատմում: Պատմող աղջիկը թեման լավ չգիտի ու ըսպասում է ընկերուհու հուշելուն:

Գրատախտակի մոտ կանգնածի թախանձագին հայացքը ընկերուհուց պահանջում է՝ հուշի՛ր: Ու ընկերուհին «փորձում» է հուշել:

Ասում է երկու բառ ու դիտմամբ շարժում աթոռը, որ ես շուռ գամ ու նկատեմ իր հուշելը: Դիտմամբ առաջ է ձգվում ու նկատելի շարժումներ անում, որ ես նկատեմ իր հուշելը:

Ես հասկացել եմ «հուշողին» ու երեսս շրջել կողքի՝ թող հուշի: Գրատախտակի մոտ կանգնածն էլ նկատում է, որ ես չեմ նայում ու պահանջում է, որ ընկերուհին հուշի:

Իսկ ընկերուհին շուրթերն է շարժում ու ոչինչ չի հուշում:

Ես այդ պահին կշռում եմ այդ փոքրիկ աղջկա խորամանկությունը:

Փաստորեն նա չի ուզում հուշել, նա դիտմամբ հուշելու ցուցադրական կեցվածք է ստեղծում, որ ես նկատեմ ու արգելեմ, իսկ դասամիջոցին ընկերուհու մոտ կարդարանա՝ ես ուզում էի հուշել, ուսուցիչը չթողեց:

— Հուշողը կհուշի ոչ թե ուսուցչի համար, այլ պատմողի,— վերջում ասում եմ ես, ու աղջիկը կարմրում է՝ զգալով, որ ես կարդացել եմ իր միտքը:

### ԱՖՈՐԻԶՄ

Դասի ավարտից քիչ առաջ աշակերտը հարց է տալիս. «Ի՞նչ բան է դժբախտությունը»:

Ես դառնում եմ հարցի վրա մտորելու, ինձ հետ մըտորում են աշակերտները:

— Դժբախտություն...,— ինձ նայելով կրկնում է Արմենը,— դժբախտությունը սեփական երջանկությունը չգիտակցելն է:

Տղայի պատասխանը հիանալի է հնչում:

«Սեփական երջանկությունը չգիտակցելը դժբախտություն է»,— գրում եմ օրագրիս «Երեխաների աֆորիզմներից» բաժնում:

### ԿՈՐԱԾ ԳԻՐՔԸ

Կորել է դասարանի լավագույն աշակերտներից մեկի ֆիզիկայի դասագիրքը, այն աշակերտի, որին ֆիզիկայի դասատուն ամեն անգամ գովում է:

Հիմա իմ դասն է, ու ես, որպես դաստիարակ, պարտավոր եմ պարզել, թե ով է վերցըրել:

— Ո՞վ կարող է վերցրած լինել,— դիմում եմ դասարանին:

— Երևի ուրիշ տեղ է կորցրել...

—Գուցե տնից չի բերել...

— Գուցե ուրիշ դասարանցիներն են մտել մեր դասարանն ու տարել...

— Գուցե ծույլիկներն են վերցրել...

— Մեր դասարանում այդպիսի բան անող չկա:

Եվ այդպես ամեն մեկը մի բան է ասում:

Հիմա ես եմ ենթադրություն անում.

— Ժողովուրդն ասում է՝ վախեցիր նրանից, ով քեզնից վախենում է,— ասում եմ՝ նայելով գիրքը կորցըրած աշակերտին,—ես կարծում եմ, որ այդ գործը նա արած կլինի, ով քո մրցակիցն է այդ առարկայից,— շարունակում եմ նայելով բութ մատիս եղունգին, ձևացնելով, որ գուշակում եմ:

Ու ես արդեն նկատում եմ, թե ով է վերցրել գիրքը.

— Հարկ չկա շարունակելու, վաղը գիրքը իր տեղում կլինի...

Հաջորդ օրը աշակերտները զարմացած մոտենում են ինձ. գիրքը գտնվել է աղբարկղում:

### ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆ

Բա՞ռը... Ինչ իմաստներ ասես, որ չի կարող կրել իր մեջ:

Նույն բառը հակառակ իմաստն էլ կարող է ունենալ. նայած թե ով է արտաբերողը, երբ է արտաբերում, որտեղ...

«Հավասարություն» բառն էր, որն այս անգամ ես լսեցի մեծ տհաճությամբ: Ավարտական քննությունից հետո էր. հրաժեշտի հավաքույթին թույլ ու ոչնչով աչքի չընկնող աշակերտու-

հին իր ելույթն է ձևակերպում.

— Մենք բոլորս հավասար սիրով սիրում ենք մեր ուսուցիչներին, մենք բոլորս հավասար ենք...

Ու բառը տհաճ հնչեց: Աներսանքով ու բարեխոսություններով գնահատականներ տեղադրեց ատեստատի մեջ, և սեփական աչքերը գոցվեցին իր և իրենից լավերի միջև եղած տարբերության առաջ, ու բոլորը դարձան հավասար:



## ԵԹԵ ԱՏՈՄԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ ՉԼԻՆԻ

Տվել եմ «Իմ երազանքը» վերնագրով շարադրություն գրել ու կարդում եմ սևաչ տղայի շարադրությունը:

«Ես ուզում եմ նկարիչ դառնալ, եթե ատոմային պատերազմ չլինի, ես կնկարեմ «Իններորդ ալիքի» պես մի նկար, եթե ատոմային պատերազմ չլինի:

Իմ նկարը կտանեն ցուցադրելու երկրե երկիր, եթե ատոմային պատերազմ չլինի:

Իմ անունը կտարածվի աշխարհով մեկ, եթե ատոմային պատերազմ չլինի:

Ինձ շատ մարդիկ կճանաչեն, եթե ատոմային պատերազմ չլինի: Իմ երազանքը դա է, եթե ատոմային պատերազմ չլինի»:

Կարդում եմ շարադրությունը և ուզում եմ նրա տակ ինքս էլ ստորագրել:

## ՆՄԱՆՈՒԹՅՈՒՆ

Հորն ասում էին, որ տղան շատ է իրեն նման դեմքով, շարժումներով, խոսակցությամբ, հատկապես՝ մատները: Բայց հայրը չէր նկատել այդ նմանությունը: Մի երեկո հայրն ուշ եկավ տուն: Որդին արդեն քնել էր: Հայրը նայեց անկողնում քնած որդուն, հետո շրջվեց գրասեղանի կողմը, որի վրա տղայի դասագրքերն ու տետրերն էին:

Տղան սովորել էր դասերը, կատարել տնային առաջադրանքներն ու սովորականի պես նկարը կիսատ թողած՝ քնել: Նայեց հայրը որդու նկարածին ու մի պահ շփոթվեց՝ սա իր նկարածն է:

Հայրը վերցնում է տասամյա որդու նկարածն ու նայում է.

— Մեղա աստծու, սա իմ նկարածն է, երբ փոքր էի, սիրում էի նկարել Մասիսները, Մասիսների առջևում՝ մի գետ, գետի վրա՝ կամուրջ,— հայրը ապշած նայում է,— այս տղան ոչ Մասիսներն է տեսել, ոչ էլ նրանց առջևից հոսող գետը և ոչ էլ այդ գետի վրա կամուրջ կա, սա ի՞նչ առեղծված է: Նա անպայման հին գրքերի ու տետրերի մեջ գտել է իմ կատարած նկարն ու այնտեղից արտանկարել...

Բայց չէ՞ որ ինքը, երբ փոքր էր ու նկարում էր Մասիսները, Արաքսն ու Արաքսի վրա՝ կամուրջ, դրանք չէր տեսել...

Նայեց անկողնում քնած երեխային, նայեց տղայի նկարած նկարին, նորից ու նորից նայեց...

Իրոք որ, տղան իրեն շատ էր նման... Շատ ու շատ էր նման, այս անգամ արդեն ոչ միայն դեմքով, այլև հոգով ու երազանքներով...

Ուրեմն, մենք շարունակում ենք մեր ծնողների ոչ միայն կյանքը, այլև երազանքները:

Հորը թվաց, թե անկողնում քնած տղան հիմա երազով անցնում է իր նկարած կամրջով, որովհետև իր հետ այդպես էր եղել:

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...



## Մարտահրավեր

Միքայելը կյանքում առաջին անգամ բոլորովին միայնակ էր զգում իրեն: Նա մենակ էր իր աչքերի առաջ կատարված և աշխարհի ամենամեծ անարդարության դեմ հանդիման:

Նա այդ օրերին կանոնավոր՝ ինչպես միշտ, բայց ինքնամփոփ, հաճախում էր Մկրտիչ վարժապետ Եկենյանի դպրոցը: Միայնության մեջ միակ սփոփանքը նրա համար ուսանելն էր, կարդալը, գիտելիքների նոր պաշարներ կուտակելը:

Հակառակի պես, մի քանի պարապմունքի մասնակցելուց հետո, նա համոզվեց, որ կաթոլիկ վարժապետից ուսանելու ոչինչ չունի: Եվ այդ էլ արդեն բավական էր, որպեսզի նա վճռեր իր անելիքը: Ոչ թե լռեր ու հաշտվեր, ոչ թե խոսեր ու բողոքեր, այլ՝ գործեր:

— Ես ձեր սովորեցրածը արդեն վաղուց սովորել եմ, և ավելի մանրամասնաբար, քան դուք դաս եք տալիս,— բոլորի ներկայությամբ հայտարարեց Միքայելը վարժապետ Եկենյանին:— Թե նոր բան ունիք՝ սովորեցրեք, ես պատրաստ եմ ուրախությամբ սովորելու, բայց եթե չունիք՝ ապա, խնդրեմ, արձակեք ինձ:

Պատանու այս հանդգնության մասին Մկրտիչ Եկենյանը տեղնուտեղը իրազեկ պահեց կաթողիկոսին, որը դեռևս Նախիջևանում էր: Ներսես Աշտարակեցին կարգադրեց շարադրություն գրելու հանձնարարություն տալ Միքայելին, անշուշտ, համոզված լինելով, որ տիրացուն բոլորի առաջ խայտառակվելու է:

Պահպանվել է Միքայել Նալբանդյանի այդ շարադրությունը, այն մասին, թե ինչպես համաշխարհային ջրհեղեղից հետո, Նոյ նահապետը դուրս եկավ տապանից և Արարատ լեռան ստորոտին ընկած հովիտը, ուր իջնանեց, անվանեց Նախիջևան, այսինքն՝ «Նախնիների իջևան»: Հետո՝ թե ինչպես է Նոյը նախապես հետը վերցրած Ադամ նախահոր գանգն ու ոսկորները տարել ու թաղել մի բլրի վրա, որը հետագայում կոչվել է Գողգոթա, այսինքն՝ գանգի կամ կառափի տեղ, ուր հրեաները այնուհետև գլխատելու կամ խաչելու էին մահապարտներին...: Մի խոսքով, իր այս շարադրությամբ Միքայելը ապացուցեց ոչ միայն իր փայլուն լեզվաիմացությունը, ոչ միայն պատմելու շնորհքը, այլև՝ գիտելիքները:

Շարադրությունը բարձրացրեց Միքայելի

հեղինակությունը Եկենյանի դպրոցում քերականություն սերտող ու վայելչագրության վարժություններ անող հոգևորականների աչքին, որոնց մեծ մասը պատանու հոր կամ նույնիսկ պապի տարիքին կլինեին: Եվ բնական է, որ նրանք սկսեցին ակնածել գիտուն և համարձակ տիրացուից: Ավելին՝ սկսեցին սիրել նրան:

Բայց նույն այդ շարադրությունը Միքայելին չազատեց Եկենյանի դպրոց հաճախելու պարտադրանքից:

Պատանին մարտահրավեր նետելով կաթոլիկ վարժապետին, բնավ էլ մտադիր չէր հենց այդքանով բավարարվել: Նա արդեն ծրագիր ուներ և ուներ նպատակ: Նա պետք է հասարակական կարծիք ստեղծեր իր ուսուցչին փոխարինող Մկրտիչ Եկենյանի մասին և նույն այդ հասարակական կարծիքի թելադրանքով թիֆլիսյան աքսորից ետ բերեր Գաբրիել Պատկանյանին:

Միաժամանակ անգ Եկենյանի դպրոցում ուսանելու դատապարտված ութ տիրացուներ մի գանգատ գրեցին, թե երեք ամիսների ընթացքում ոչինչ չեն սովորել, բացի այդ,—շարունակում էին տիրացուները,— վարժապետը մեզ չի ուսուցանում քերականություն և ճարտասանություն, ասելով, թե մեր գիտցածը իսկ բավական է: Եվ չկամենալով սովորեցնել մեզ, ստիպում է, որ դպրոց հաճախենք: Իսկ մենք, տեսնելով, որ մեր ջանքերը ապարդյուն են, ետ կանգնեցինք այդպիսի ուսումնառությունից:

Քաղաքի հայերը լրջորեն անհանգստացան: Այս ամենից արդեն ըմբոստության հոտ էր գալիս: Միքայելին հեղինակազրկելու նպատակով նրանք որոշեցին հրապարակային մրցակցություն կազմակերպել: Մկրտիչ Եկենյանի համար այդ մրցությունը ծանր փորձություն էր լինելու: Թեև բոլորը համոզված էին, որ Միքայելի պարտությունը կասկածից դուրս է: Բոլորը, բացի Եկենյանից, որի համար նահանջի ճանապարհ չկար: Նա ինքն էր վերևներին ներշնչել, թե հանդուգն պատանին նաև տգետ է:

Մրցությանը որպես վկաներ հրավիրվեցին բժիշկ Սարգիս Տիգրանյանը, ճեմարանավարտ Դավիթ Օղաբաշյանը, Թեոդոս Խաղամյանը, Հարություն Ավագյանը, իսկ դատավորներ նշանակվեցին Մարտիրոս և Աստվածատուր քահանաները:

Վարժապետ Եկենյանին և խռովարար տիրացու Միքայելին տալով միևնույն գաղափարը, պահանջեցին, որ նրանցից ամեն մեկը գրատախտակին գրի առնի շարադրանքը: «Մինչև Եկենյանը երկու տող գրեց,— հիշում է Ականատեսը,— Նալբանդյանը ավարտեց մի ոտանավոր»:

Հաղթանակը համոզիչ էր ու կատարյալ: Բայց եթե Միքայելը որևէ բան շահեց մրցությունից, ապա այն էր, որ թե՛ բարեկամները և թե՛ հակառակորդները համոզվեցին, որ հանդուգն, շիտակ, ծաղրող ու կծու պատանին շատ հեռու է պարծենկոտությունից: Համոզվեցին, որ պատանու խոսքի ու գործի մեջ գոյություն ունի մի զարմանալի ներդաշնակություն... Եվ հենց այս հատկանիշն էլ՝ խոսքի ու գործի կատարյալ ներդաշնակությունը, Միքայել Նալբանդյանի ապրած կյանքի մշտական ուղեկիցն էր, նրա անբաժան ստվերը, նրա առաքինությունը և այն մեծ հավատի ակունքը, որ Միքայելի նկատմամբ ունեին նրան շրջապատող մարդիկ, նրա հետևից գնացող համախոհները, նրա հետ իր լուսավոր երազների ճակատագիրը կապող մի ամբողջ ժողովուրդ:

... Իսկ Մկրտիչ Եկենյանը բացահայտ պարտությունից հետո էլ շարունակում էր պնդել, թե Միքայելի շարադրությունները արտագրված են, թե չպետք է նրան հավատ ընծայել, եթե նույնիսկ գրում է վկաների ներկայությամբ, որովհետև նախապես անգիր է անում: Վաղուց ի վեր կռահած լինելով, որ պատանի Միքայելի կռիվն իր դեմ ծնվել է ամենից առաջ սիրելի ուսուցչին ու մտերիմ մարդուն՝ Գաբրիել Պատկանյանին կորցնելուց, Մկրտիչ Եկենյանը շարունակ լարված էր պահում մթնոլորտը, շարունակ բորբոքում էր Հարություն Խալիբյանի զայրույթը:

Իսկ Միքայելը մենակ էր:

Համախոհները խեղճ ու կրակ մարդիկ էին և հեշտությամբ կաշառվում էին: Հակառակորդները հզոր մարդիկ էին ու նաև՝ պայքարի միջոցներում խտրություն չէին դնում: Կաթողիկոսը նրբորեն ակնարկել էր, որ պատանին չորրորդ ամուսնության ծնունդ լինելով, ոչ միայն չպետք է համարձակվեր եկեղեցու սպասավոր դառնալ, այլև «դպիր» ընտրագրել: Այնպես որ, մենակ էր նաև իր անորոշ ապագայի հետ, որովհետև վերանում էր հոգևորական դառնալու հեռանկարը:

Անշուշտ, նա մենակ էր:

Եվ շատ շուտով ճաշակելու էր նաև դավաճանության ու մատնության ամբողջ դառնությունը: (շարունակելի)



# Օճառե պղպջակներ

ՍՎԵՏՈՍԼԱՎ ՄԻՆԿՈՎ
(բուլղար գրող)

Նկարը՝ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆՏՈՆՅԱՆԻ

Կար-չկար մի փոքրիկ աղջիկ՝ կարմիր ժապավենը մազերին: Մի օր նստել էր նա իրենց տան առջևի պարտեզում և ձեռքն առել օճառաջրով բաժակը: Ժամանակ առ ժամանակ ձողիկը մոտեցնում էր իր կարմիր շուրթերին և ձողիկի ծայրից դուրս էին թռչում պղպջակներ, որոնք փայլում էին արևի տակ ծիածանի բոլոր գույներով և բարձրանում երկինք:

Այդպես շատ պղպջակներ դուրս թռան ձողիկի միջից, և նրանցից յուրաքանչյուրը մտածում էր, որ իրենից լավը չկա:

— Ինչ ուրախ եմ, որ առաջինը ես ազատվեցի այդ հասարակ ձողից,— բացականչեց առաջին պղպջակը և հպարտությունից ուռչելով, թռավ դեպի մարգարտածաղիկների թուփը:

— Իսկ ես կթռչեմ թագավորական պալատ և կընստեմ արքայական գահի վրա,— հայտարարեց երկրորդը,— միայն ես եմ արժանի այդ հրաշալի տեղին, չէ՞ որ ինձնից գեղեցիկը չկա ամբողջ աշխարհում:

— Ախ, ես շատ թեթև եմ,— հառաչեց երրորդը և հանկարծ դարձավ կարմրանարնջագույն,— շտապեմ դեպի երկինք և իմ փայլով

արեգակի նման լուսավորեմ ողջ երկիրը:

— Ուշադրությո՛ւն,— բացականչեց չորրորդը, և մանուշակագույն շողեր արձակելով, թռավ դեպի ծեր լորենին,— ես թռչում եմ երկինք, որ աստղերը նույնպես նախանձեն իմ գեղեցկությանը:

— Իսկ ես ամուսնանալու եմ թագավորի աղջկա հետ,— ասաց հինգերորդը, որը ձմերուկի պես կանաչ էր,— բոլոր բզեզներին և միջատներին հրավիրում եմ իմ հարսանյաց հանդեսին:

— Ես կթռչեմ դեպի ծովը և կդառնամ ծովային թագավորության տիրակալը,— հայտարարեց վեցերորդ պղպջակը և կապույտ օղակ դարձավ ու անհետացավ:

— Ինչ անշուք է այս աշխարհն առանց ինձ,— ասաց յոթերորդը: Նա դանդաղ պտտվում էր հավաքնի վրա:— Վերջապես ես աշխարհ եկա, որպեսզի բընությունը չամաչի իր ստեղծած տգեղ էակների համար:

Այսպես՝ պղպջակներից ամեն մեկը մի բան էր մըտածում և պայթում՝ չհասցընելով կատարել ցանկացածը, առանց որևիցե հետք թողնելու թափանցիկ, արևային օդի մեջ: Իսկ բարակ ձողիկի միջից անընդհատ թռչում էին նորանոր պղպջակներ և անմիջապես պայթում: Նրանք բոլորն էլ գոռոզ էին և կարճատև կյանք ունեցան իրենց նախորդների նման:

Դա շարունակվեց այնքան, մինչև ձողիկը կոտրըվեց, իսկ փոքրիկ աղջիկը մնացած օճառաջուրը թափեց գետնին և սկսեց մի ոտքի վրա ցատկոտել:

Թարգմ. Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ



ՄԿՐՏԻՉ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# Արտույտի գորգը

Մայիսին կանաչ իր բնի առաջ
Մի մայր արտուտիկ՝ կուրծքը խատուտիկ,
Էն լույս արոտից, թարմ, կանաչ խոտից,
Որ շուրջն էր բուսել, մի գորգ էր հյուսել,
Եվ այդ գորգի տակ իր ձագերն առած,
Ծվարել էր նա խնդություն դառած:

Մին էլ մի բութ եզ՝ կոպիտ ժայռի պես,
Ծանր ու հն-հնի շարժվեց վերև,
Երբ գորգին հասավ, արտուտիկն ասավ.
— Զգույշ, սիրելիս, չդիպչես գորգիս,
Ձագերս ամեն քնած են այստեղ,
Դու նրանց նայիր, գթա, խնայիր:
Եզն ինչ հասկանա գորգից արտույտի,
Թարմ կանաչ տեսավ, նա պետք է ուտի:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱՄԱՐԱՍ

Հայկական յոթ հնագույն վանքերից մեկը՝ Ամարասը, որ համարվում էր Արցախի Մյուս Հաբանդ գավառի լուսատաճարը, գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, Խազազի ու Լուսավորչի լեռների միջև ընկած գեղեցիկ հովտում: Չորրորդ դարի սկզբում այն հիմնադրել է Գրիգոր Լուսավորիչը, իսկ կառուցումն ավարտել է նրա թոռ Գրիգորիս եպիսկոպոսը:

Ինչեր ասես, որ չի տեսել հայկական ոգու այս կրթատունը: Ասպատակողները յոթ անգամ ավերել են վանքը՝ Ամեն անգամ թշնամին հիմնահատակ կործանում էր վանքը և նրա կողքի Ամարաս գյուղաքաղաքը: Ու որպեսզի վանքն այլևս չվերականգնվի, ասպատակողների զորապետն իր զորքը շարքով կանգնեցնում էր մինչև Երասխի ափը, և զինվորները վանքի քարերն իրար տալով, թափում էին գետը: Սակայն ասպատակողների հեռանալուց մի քանի տարի անց Ամարասի վանքը նորից էր վերաշինվում, և նրա կամարների տակ վերստին հնչում էր հայերեն խոսքը:

Բայց ինչո՞ւ է վանքն Ամարաս կոչվել, ի՞նչ է նշանակում Ամարաս: Արցախեցի մեր արևապաշտ նախնիները համոզված էին, թե արևը տարին մի անգամ մոտենում է Ամարասին և այստեղից Արցախի սարուձորերում այնքան ջերմություն թողնում, որ բավականացնի ամբողջ տարին և սառնամանիք չլինի: Արեգակի՝ Երկրին մերձենալու այդ տեղը արցախեցիները կոչել են ամ արև աստ, այսինքն՝ աստ՝ այստեղ, արևը երկրին մոտենում է տարին մի անգամ: Ամ արև աստ, ամ արև աստ ասելով՝ այս վայրը կոչեցին Ամարևաստ, որ հետո հնչյունափոխվեց ու դարձավ Ամարաս:

## ԱՄԵՆԱՇԱՏ

Վան քաղաքի հյուսիս-արևմտյան կողմում Ամենաշատ անունով մի գյուղ է եղել: Այս գյուղի անվան պատմությունը կապված է Վասպուրականի Գագիկ Արծրունի արքայի առաջին հրովարտակի հետ:

Թագադրվելուն պես Գագիկ Արծրունին այսպիսի հրովարտակ է արձակում. «Ամեն տարի մի տոպրակ ոսկի տալ ամենաշատ ծնունդ ունեցող գյուղի շինականներին»:

Տասներկու տարի շարունակ արքայական ոսկու տոպրակն ստանում էր նույն գյուղը, որի համար էլ այն կոչվեց Ամենաշատ, այսինքն՝ ամենաշատ ծնունդ ունեցող հայկական գյուղը:

## ԱՄՊ

Բաղեշ քաղաքի հարավ-արևմտյան կողմում, բարեբեր սարավանդի վրա, մի գյուղ է եղել, կողքին՝ հանքային աղբյուրներ: Հաճախ այս աղբյուրների մոտ ամպի մի քանի ծվեններ են կուչ եկել և օրերով մնացել ձորերին կառչած:

Մի անգամ գյուղում լուր է տարածվում, թե մի մեծ հրոսակախումբ մոտենում է գյուղին: Շինականներն ահուսարսափի մեջ են ընկնում: Հենց այդ ժամանակ հանքային աղբյուրների մոտ կուչ եկած ամպի ծվենները ուռչում են և վերև շարժվելով՝ իրենց քողի տակ առնում գյուղը և նրանցից ոչ հեռու գտնվող Խ ն դ ր ա կ ա տ ա ր Սուրբ Աստվածածին վանքը:

Թշնամին շփոթվում է և չի կարողանում գտնել գյուղ տանող ճամփան: Իսկ ամպը գյուղի վրա մնում է մի քանի օր:

Այս դեպքից հետո շինականներն իրենց գյուղի անունը դնում են Ամպ:

## ԱՅԳԵԿ

Հայկական Կիլիկիայի Տնկալայի շրջանում 1166 թվականին մի վանք է հիմնադրվել և Այգեկ կոչվել, որովհետև գտնվում էր այգեշատ տեղում:

1206 թվականին այս վանքում հաստատվել է առակագիր Վարդանը, որ հետագայում վանքի անունով կոչվեց Վարդան Այգեկցի:

## ԱՅԼԱՆՑ

Այլանց գյուղը Սասունի հրաշքն է: Լեռներին կպած այս գյուղի կողքին քառասուն աղբյուր կար՝ մեկը մյուսից սառնորակ: Մարդիկ խմում էին այդ գովական ջուրը, հիանում ու ասում.

— Սա ուրիշ բան է, այս ջուրը այլ անցքից է դուրս գալիս:

Այլ անցքից, այլ անցքից ասելով՝ գյուղը կոչվեց Այլ անցքից, որ հետո սեղմվեց ու դարձավ Այլանց:

## ԱՅԾՊՏԿՈՒՆՔ

Հայկական լեռնաշխարհի գագաթներից մեկը կոչվում է Այծպտկունք: Հիմա, երբ ինքնաթիռից նայում ես, այդ լեռն, իրոք, նման է այծի պտուկների: Մեր հները լեռն այդպես են կոչել մի քանի հազար տարի առաջ, երբ աշխարհում ինքնաթիռ չկար, և մարդը չէր կարող երկնքից լեռներին նայել: Բայց մեր նախնիները դիտել են այդ լեռը և կռահել, որ հեռվից այն կնմանվի այծի պտուկների: Եվ դրա համար էլ անվանել են Այծպտկունք:

## ԱՅՐԱՐԱՏ

Հնում Հայոց աշխարհի կենտրոնական նահանգը կոչվում էր Այրարատ: Դա Հայքի միջնաշխարհն էր, Արարատյան դաշտը՝ իր շրջակա գավառներով:

Զրույցն ասում է, թե արևը՝ աշխարհին լույս տալուց առաջ՝ մի ոտքը հենում է Մասիսին և նոր արձակում իր ճառագայթները: Եվ, իբրև թե, հաճախ այրերը, այսինքն՝ տղամարդիկ, կանգնում էին այս լեռան վրա և խոսք ու զրույց անում արևի հետ: Մի անգամ, սակայն, արևը դժգոհել է ու ասել.

— Սա խոսելու տեղ չէ, ի՞նչ եք ոտքիս տակ ընկնում: Բան ունեք ասելու՝ իջեք լեռան ստորոտ, արձակ դաշտի մեջ սպասեք ինձ:

Այդ ժամանակվանից մարդկային ոտքը կտրվել է Մասիսի գագաթից, իսկ այրերն ու արևը իրար հետ հանդիպել ու խոսել են մեծ դաշտում, որ հետո կոչվեց Այրարատ, այսինքն՝ այրերի ու արևի երկիր: Դաշտի անունով նահանգը, իսկ հաճախ նաև ամբողջ Հայքը, անվանվեց Այրարատ կամ Արարատ:




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՅՈԹԵՐՈՐԴ

# Հայքը և Խաթթին

Այսպես ահա, մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջերին հայերի հարավային հարևանները՝ ասուրաբաբելացիները, Միջագետքում ըստեղծել էին Աքքադի հզոր պետությունը: Այդ պետության մեջ բնակվում էին նաև շումերներ, խուռիներ և այլ ժողովուրդներ: Թագավորները՝ Սարգոն I-ինը, Նարամ-Սուենը և մյուսները, ասուրաբաբելացիներ էին: Հետո շումերները իշխանությունը նրանցից խլեցին, բայց մ. թ. ա. 2-րդ հազարամյակի սկզբում Միջագետքում ստեղծվեցին ուրիշ պետություններ, այդ թվում Բաբելոնը և Ասորեստանը, որոնց թագավորները ասուրաբաբելացիներ էին: Իսկ շումերները շուտով կորցրին իրենց լեզուն և ձուլվեցին ասուրաբաբելացիների մեջ:

Հայերի արևմտյան հարևանները խեթերն էին: Նրանք մ. թ. ա. 2-րդ հազարամյակում (մ. թ. ա. 17-րդ դարում) ստեղծել էին իրենց պետությունը: Այդ պետությունը կոչվում էր Խաթթի, գտնվում էր Փոքր Ասիայի կենտրոնական մասում: Շուտով Խաթթին դարձավ ամենահզոր պետությունը Փոքր Ասիայում, որի հին անունը Անատոլիա է: Խեթերը Անատոլիայի հնագույն բնակիչներից էին: Նրանք սովորեցին սեպագիր նշանները և դրանցով սկսեցին իրենց լեզվով արձանագրություններ գրել: Ինչպես գիտեք, սեպագրերը ստեղծել են շումերները, որոնք գրում էին իրենց լեզվով: Հետո սեպագիրը սովորեցին ասուրաբաբելացիները. սրանք էլ գրում էին շումերերեն և իրենց լեզվով: Ապա սեպագիրը սովորեցին այլ ժողովուրդներ, այդ թվում՝ խեթերը: Նրանք և հարևան մի քանի ժողովուրդ սեպագիր նշաններով գրում էին խեթերեն, ասուրաբաբելերեն:

1906 թ. հնագետները, խեթերի հին մայրաքաղաք Խաթթուսան պեղելիս, գտան հազարավոր խեթերեն սեպագիր արձանագրություններ: Դրանք գրված էին մ. թ. ա. 18—13-րդ դարերում: Նրանցում պատմվում է Խաթթիի և հարևան ժողովուրդների պատմությունը: Օրինակ, դրանցից իմանում ենք, որ արևմուտքից Խաթթիի հարևաններն էին Տրոյան (որի մասին Հոմերոսը գրեց «Իլիականը»), Աքիյավան, Արծավան: Այս վերջին երկուսը հույն բնակչություն ունեին, բայց գործածում էին սեպագիր խեթերենը: Հյուսիսից խեթերի հարևաններն էին կասկերը, որոնց երկիրը կոչվում էր Կասկա: Կասկերը բնակվում էին Սև ծովի հարավային ափին և անընդհատ պատերազմի մեջ էին Խաթթիի



հետ: Հարավ-արևելքում Միջագետքն էր: Այնտեղ կար Միտանի պետությունը, որի թագավորները և բնակչության մեծ մասը հնդիկներ էին: Միջագետքում էր նաև Ասորեստանը, որ գնալով հզորանում էր: Իսկ արևելքից Խաթթի հարևանը հայերն էին, Հայքը:

Մ. թ. ա. 15—13-րդ դարերում գրված խեթական արձանագրությունների մեջ հաճախ է հիշատակվում Հայասա երկիրը: Հին ժամանակ հոգնակի թվի մասնիկը նաև երկիր էր ցույց տալիս: Օրինակ, հին հայերենի հոգնակին կազմվում էր **-ք** մասնիկով (ինչպես որ այժմ կազմվում է **-եր** և **-ներ** մասնիկներով): Հնում Հայք նշանակում էր հայեր և հայերի երկիր, կամ Վիրք նշանակում էր վրացիներ և վրացիների երկիր (Վրաստան): Խեթերեն հոգնակիի մասնիկն էր **-ասա-**ն: **Հայասա** խեթերեն նշանակում էր հայեր և հայերի երկիր՝ **Հայք**: Խեթերն աշխարհի այն հազվագյուտ ժողովուրդներից են եղել, որոնք մեզ կոչել են այնպես, ինչպես մենք ենք մեզ անվանում՝ հայ:

Հայքի գավառների ու քաղաքների անունները խեթերենում քիչ ձևափոխված են. օրինակ, հիշվում է Թարհիգամա քաղաքը, որ հայոց Թորգոման է, հետո կոչվել է Թորդան: Հիշվում է Ուրա բերդը, որ հայոց Ուռնեն է, Կումախան, որ հայոց Կեմախն է, Խախան, որ հայոց Խախ բնակավայրն է (Երզնկայի մոտ) և այլն: Կամ հիշվում են Ախուրիանի և Գիարնիանի, որոնք մեր Ախուրյանն ու Գառնին են:

Հայքի և Խաթթիի սահմանը եղել է Եփրատ գետը և նրա ուղղությամբ գրեթե ուղիղ գծով մինչև Սև ծով:

Պարզվում է, որ այն ժամանակներում Մեծ Հայքի Արևմտյան կեսում կազմվել էր հայկական պետություն:

Խեթական արձանագրությունները պատմում են, որ Հայքը երբեմն դաշնակցել է արևմուտքի Արծավա, հյուսիսի Կասկա և հարավի Միտանի պետությունների հետ, և նրանք միասին դիմադրել են խեթական նվաճողներին: Հաճախ էլ իրենք են հարձակվել Խաթթիի վրա:

Խեթերի Թուդհալիա III թագավորը հաղթեց Միտանիին և հարձակվեց Հայքի ու Կասկայի վրա՝ նվաճելով որոշ շրջաններ: Բայց հայերը նոր զորք հավաքեցին և իրենց Կարաննի թագավորի ղեկավարությամբ Կեմախ քաղաքի մոտ ճակատամարտ տվեցին խեթերին: Սրանք շուտով ետ շարժվեցին:

Թուդհալիայի մահից հետո հայերն ու կասկերը դաշնակցած հարձակվեցին Խաթթիի վրա, գրավեցին Խաթուսա մայրաքաղաքն ու այրեցին:

Մ. թ. ա. մոտ 1380—1346 թվականներին Խաթթիում իշխում էր Սուպիլուլիումա թագավորը, որը ջախջախեց Միտանի պետությունը և հաշտություն կնքեց Հայքի թագավոր Խուկաննայի հետ: Միտանիի հյուսիսային մասն անցավ Հայքին, իսկ հարավային որոշ շրջաններ՝ Ասորեստանին:

Ասորեստանն արդեն շատ էր հզորացել և Հայքի համար ավելի վտանգավոր էր, քան Խաթթին: Հայքի թագավոր Խուկաննան փոխադարձ օգնության դաշինք կնքեց նախկին հակառակորդ Խաթթիի հետ: Այդ դաշինքն ամրապնդվեց նրանով, որ հայոց Խուկաննան ամուսնացավ խեթերի թագավոր Սուպիլուլիումայի աղջկա հետ:

Խաթթիի հաջորդ թագավոր Մուրսիլի II-ը խախտելով հայոց Խուկաննա թագավորի հետ իր հոր կնքած դաշինքը, պատրվակ գտնելով հարձակվեց Հայքի վրա: Այն ժամանակ Հայքի թագավորն էր Աննիան (երևի նրա անունով են կոչվել Հայքի երկու Անի քաղաքները): Խեթերը պաշարում են հայոց Ուռնեն (Ուրա) ամրոցը, բայց չեն կարողանում գրավել և նահանջում են: Հայկական զորքը գրավում է Խաթթիի մի քանի քաղաք: Հետո խեթերն են հարձակվում և գրավում հայոց մի քանի քաղաքներ:

Իսկ հզորացած Ասորեստանն արդեն ընպառնում էր թե՛ Հայքին, թե՛ Խաթթիին:

Այդ ժամանակաշրջանի հայոց պետությունը խեթերն անվանում էին Հայասա—Ազզի: Պետությունը կազմված էր թագավորից և զորավարների ու ավագների խորհրդից: Հայերը հիմնականում հողագործ էին, զարգացած էր այգեգործությունը:

Մ. թ. ա. 13-րդ դարի վերջերին հայոց այս միասնական պետությունը բաժանվեց առանձին մասերի: Դրանցից մեկն էլ Վանա լճի շրջակայքում ստեղծված հայկական պետությունն էր:

Ասորեստանի դեմ կանգնած էր ոչ թե հայոց միասնական մի պետություն, այլ առանձին հայկական իշխանություններն էին դիմադրում: Զգացվում էր երկիրը միավորելու պահանջ:

Այդ ժամանակներում խեթերը, ինչպես վկայում է Ասորեստանի թագավորին Խաթթիի թագավորի գրած նամակը, Հայքը կոչում էին Հայասա, իսկ Ասորեստանի թագավորը իր նամակներից մեկում նույն տարածքը անվանում է **Նաիրի**:

(շարունակելի)



ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆ

# Անձրև

Թելիկ-մելիկ, երիզ-երիզ
Վարագույրը անձրևահյուս
Մի պահ կախվեց-իջավ գետին՝
Տարածելով կայծկլտուն լույս։

Տարածելով գոհարների
Ջինջ կաթիլներ՝ թե պաղ, թե տաք,
Ծլվլացող ծիտիկներին,
Բալիկներին—
Ուրախություն։

Ուրախություն դաշտ ու սարին,
Ծոգից հոգնած, պապակ այգուն.
Թող որ առատ լինի տարին,
Դեղձը քնքուշ թավիշ հագնի,
Ու խնձորը հասունանա,
Եվ խաղողը ողկույզ-ողկույզ
Արև խմի ու քաղցրանա։

Դուրս եմ գալիս, անձրևի տակ
Անվախ-անվախ կանգնեմ այսպես.
Տեսնենք իրար, ժպտանք իրար
Ջրափոսում՝ երկինքն ու ես։

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Ձյունը բարձր նստել էր հանդերի խորդուբորդ մեջքին։ Բուքը հզոր սահում էր նրա վրայով, և առավոտները տղամարդիկ մի նեղ ու խոր ճամփա էին բացում դեպի սառած աղբյուրներն ու քանդում նրանց վրա բքի կառուցած հաստ ու կոր տանիքները։

Գիշերները ձյան խորքերով մրսած, թաքուն ու սովահարի ահով գալիս էին գայլերը։ Եվ բոլորը գիտեին, որ նրանք մինչև գարուն պիտի գան։ Գոմերի դռները փակ էին երկու կողպեքով, և դռների, երդիկների ու նեղ պատուհանների կողքերն ու փակվող եզրերը գոմաղբով ամուր ու տաք սվաղած էին։ Հավերի թառը կովերից ու դուռ-պատուհաններից հեռու էր տարած, որ հավերը կովերի մեջքերը չկեղտոտեն, որ շատ համարձակ ու գայլին սուտ հետքերով խաբող աղվեսը փոքր, շատ փոքր ու մոռացված անցքերով ներս չմտնի, որ այդ ահից հավերը ձվից չընկնեն։

Տաք, խաղաղ գոմում լամպի նիհար լույսը մանր դողդողում էր այսն անկյունում և տարածվելով կովի, ոչխարնոցի ու գառնոցի տախտակյա անհավասար ցանկապատերի, հավերի թառի ու սյուների վրա՝ ամեն գիշեր ստեղծում նույն աներևակայելի ու միօրինակ պատկերները։ Կեսգիշերվա դանդաղ ու հոգնած պտույտում այդ պատկերները կարծես ծանր ահ էին,որի մեջ հավերը միամիտ դողալով սպասում էին սատանա-սատանա մոտեցող աղվեսին և ուժասպառ մխիթարվում իրենց միակ աքլորով կամ նախանձում նրան փոքրիկ, ճխլված մի ծեղ քաջության համար։ Կովը լուռ ու հպարտ որոճում էր և փորի հորթուկի հետ մինչև լույս շարունակ ետ մղում գայլի համառ, սառը ու տհաճ ահը՝ աչքը, այնուամենայնիվ, դատարկ խոզատեղի անկյունին, ուր պիտի ապրեր իր փոքրիկ հորթուկը։ Նա ծեր կով էր, և այդ անկյունում իր հորթուկներից շատերն էին քաղցր մեծացել։ Վախից թմրած ոչխարի մեջ մինչև կեսգիշեր պտտվում էր աքլորը՝ փետուրները վախկոտ կախած։ Ամեն շրշումից կծկվող ոչխարները խրտնելով ճամփա էին տալիս նրան և ծամում սարի բույրը պահած խոտը։

Այդ գոմը առավոտյան և երեկոյան մտնում էր Արուսիկը՝ ուժեղ ու բարձրահասակ տղան։ Նա արդեն երեք ամռան հնձվոր էր, իսկ այդ հունվարին՝ տասներորդ դասարանի աշակերտ, և պիտի մինչև հաջորդ ամառ դիմանար Երևանում ըմբշամարտիկ դառնալու երազանքին։

Նա գիտեր ձյան խորքերով սարից դեպի իրենց գոմը եկող գայլին։ Նրանք հրացան

**ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ**

# Գայլը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ունեին, և նա ամեն տարի Նոր տարվա գիշերը երկու անգամ հրացան էր կրակում: Նա որոնել էր գայլի հետքերը: Գիտեր, որ գայլի ճամփան խոտի դեզի մոտ դուրս է գալիս ու հենց այդտեղ խառնվում կոլխոզի գոմերի լայն ճանապարհին: Այսինքն՝ գայլը մինչև գոմ իբր ոչ մի հետք չուներ: Նա միամիտ կերպով կարծել էր, թե իր հետքերը կարող է շան հետքերի տեղ դնեն, և կարծել էր, թե գոմի տափակ կտուրի վրայի հետքերը բոլորովին չեն երևում, որովհետև այդ միամիտ գյուղում միջնակարգ դպրոց չկար, և Արութիկը գնում էր հարևան՝ ավելի մեծ ու իր շատ ճանապարհների խիտ ցանցով գայլին լրիվ հուսահատությամբ վտարած գյուղը:

Գոմը և խոտի դեզը իրարից հեռու էին: Դեզը հենց հանդի ճանապարհի կողքին էր: Գոմը բակի ավելի խորքում էր՝ թեք դիրքով, և մի անկյունը շատ էր մոտ ճամփին ու ցածր էր գայլի թռիչքի չափ: Բայց այդ անկյունի մոտով Արութիկը անցնում էր կողքով-կիսամեջքով նրան դարձած: Առավոտյան նա կողքի չէր նայում, գնում էր ձեռքերը գրպաններում ու ծնոտը օձիքի մեջ թաղած և արագ, որ հարևան և իրենց գյուղի արանքի բաց, ամայի տարածության վրայով սահող խուլ բքի մեջ մենակ չմնար: Բայց գայլը ամեն առավոտ քանդում էր ձյան խորքից գոմ բերող իր թաքուն անցքի հենց դեզի մոտ, մեծ ճանապարհի վրա դուրս եկող վերջը և այնքան խորամանկ էր քանդում, որ կարծեին, թե շներն են խոր գիշերվա անհայտ մի ժամի գզվռտել: Հետո, մինչև Արութիկի սովորած տուն գալը, բուքը փափուկ ու կլոր թաքցնում էր գայլի անցքի խորամանկ քանդած վերջը և նրա խոշոր, իբր շան հետքերը:

Ցերեկից հետո, մանր, սառը ցուրտն ամրացնում էր բքի ձգած նոր գետինը, նոր պատերը, նոր ճանապարհները, նոր տանիքները և կես մետր բարձրացնում: Այդ հանդարտ ժամին տղամարդիկ բարձրանում էին դեզերի վրա և մի փոքր տեղ մաքրում ձյունից: Հետո բերանը կլոր, սուր ու կարճկոթ բահով խոտ էին կտրում՝ այդ օրվա ու հաջորդ առավոտվա համար: Այդ հանդարտ ժամին Արութիկի մայրը գոմի դռան առաջ, ուր փոքր հրապարակի նման ձյունը հարթ էր ու ամուր, հավերին գարի էր նետում՝ գոմի դուռը մի փոքր կիսաբաց թողած: Նրա ձայնը ամռան զվարթություն ուներ, տան անընդհատ տոթից դեմքը կարմիր էր, և շորերից տարածվում էր վառարանի փափուկ, խարկված տաքություն:

Արութիկը տավար-ոչխարին ջուր էր տվել, սպասում էր ուտեն, որ աղբյուր՝ ջրելու տանի: Նա եղանը ձեռքին գոմի դռանը հենված՝ մորը պատմում էր ձյան խորքից եկող գայլի անցքի ու խեղճ, կաշի ու ոսկոր դարձած գայլի մասին:

— Բա աղվեսը,— ասում էր Արութիկը,— բա աղվե՞սը: Ուրեմն էս գիշեր պատուհանի մոտ է հասած եղել, դնչով, թաթերով հրել է ապակին, բայց ապակին չի ջարդվել, ու աղվեսըս վախեցած գնացել է անկյունի կողմից ավաղը մի քիչ թափված պատի մոտ: Ընտեղից գոմի ու հավերի հոտը շատ է ուժեղ գալիս...

Այդ հանդարտ ժամին աղվեսը դեզի ու ձյան արանքում իր թաքստոցի մի փաթիլով ծածկվող բարակ ծակից նայում էր մորն ու տղային, գոմի կիսաբաց դռան մութ ճրագալույսին, աքլորի հպարտ տեսքին, հավերին... բայց նա շատ էր զսպված սատանա, որպեսզի շարժվի:

Այս ամենը աղվեսը միշտ չափում-կշռում էր և գործը թողնում գիշերվան, թեև գայլը հիմնականում այդ ժամանակ էր դարանակալ ու ոչնչի առաջ կանգ չառնող:

Գայլը, իր անցքի սկզբում, որ հեռու Սուրբ Հովհաննես սարի տակ՝ ձորի մեջ էր, մի անգամ չափեց-կշռեց իր հատկապես սովից սատկողի նվաստ դիմադրությունը և այդ գիշեր չգնաց մինչև լույս գոմի հոտերի ու ոչխարի ահի մոտ անհամարձակ սպասելու: Նրա հա-

մառ սպասումը քաղցր ու հրաշալի էր եղել նրանով, որ ամբողջ գիշեր իր սառը աչքի դեմ ոչխարը թույլ ու հնազանդ իբրև թե տապալվում էր ու այլևս չէր ուզում մնալ գոմում, ուզում էր դուրս գալ այդպես խեղդվելուց, տեսնել գայլի ուժեղ մարմինն ու գնալ դեպի նրա հզոր թափը: Բայց դա արդեն միօրինակ ու շատ պես սովածի անվերջ պըտույտ էր և կույր պատի նման կանգնել էր դեմը: Անվերջ գիշերներում նրա երևակայությունը այդպես հրաշալի թմրեցնում էր սոված սատկելու հուսահատությունը: Այդ քաղցըր պտույտների մեջ անհաճո աղմուկը աղվեսի փափուկ քայլքն էր ու պատը կծելու, ճանկռելու թույլ ճզճզոցը: Աղվեսը միայնակ էր, անքուն սատանա, և նրա թաքստոցը գայլի թաքստոցից շատ հեռու չէր, դեզի վերջում էր, գայլի անցքից ետ: Նրա միամիտ նիրհի դեմ անգամ գայլը դեռ չէր կարողացել հարմար ու վճռական թռիչք կազմակերպել և իրեն շարունակ պահել էր խորամանկ անտարբեր: Նա աղվեսի դեմ պարզունակ միամտություն էր արել ու ցույց տվել, որ իր բոլոր ամենաասոված ժամերին էլ արհամարհում է աղվեսին և ափսոսում նրա դեմ պահվելիք իր դարանակալ ու լարված սպասումը: Դա արժանի է միայն իր բարձր նըպատակին, երբ անպայման կմտնի գոմ ու սովածի կատաղությամբ աջ ու ձախ ոչխար կջարդի, որովհետև առջևում դեռ կանաչ գարուն կա ու առանց շների ոչխարի հոտ: Բայց աղվեսի աղմուկը Արութիկի աղմուկ էր թըվացել, և նա միայն այդ գիշեր կարողացավ տարբերել աղվեսի խաղաղ անզորությունն ու Արութիկի աչքի տակ ոչխարի պես իր խեղդվելը:

Կատաղությունից նրա չարությունը լուռ ընդարձակվում էր ու ամեն կողմից դեմ առնում Արութիկի ծանր ավելորդությանը: Նրանից վախ ուներ, դա մարդու վախ էր, ու չէր կարողանում իր անմաքուր բարկությունը լրիվ թափել նրա գլխին: Նա նստեց ու մինչև կեսգիշեր վախը բոլորովին դատարկելու համար ամբողջ ուժով ոռնաց: Ականջները միայն իր ձայնն ու հեռու արձագանքները լսեցին, երևակայությունը միայն իր մարմինն ու կատաղության թափը զգաց, և ուժը ոգևորությունից շռայլ ու տիրակալ ողողեց մարմինն ու իր մենության շուրջը եղած տարածության մեջ նա իր աչքին թվաց բացարձակ հզոր ու տիրակալ: Գիշերվա մնացած ընթացքում նա նույն արահետով անվերջ պտտվեց որջի շուրջը, և ամեն պտույտից մարմինը հզորանում էր ու բարձրանում, հզորանում էր ու բարձրանում: Դանդաղ ու ավելորդ բեռների նման արահետի կողքերին թափվեցին հին հուշերն ու խորամանկությունները, կասկածամըտությունները ու սոված սատկելու հուսահատ տխրությունները, ընկճված հավատներն ու շատ աչքերը, երևակայության նիրհ բերող մխիթարանքներն ու մաշված, ցածր անազնըվությունները, և կատաղության ամրացնող չարությամբ մաքուր զտվեց ու առանձնացավ վճռական կռվի թափը: Եթե տիրակալ ու արդեն կազմակերպված դարանակալություն էլ կար աղվեսի նկատմամբ, մի աննշմար, բայց հաստատ համոզում, որ ցանկության դեպքում կկարողանա ճարպկորեն ճանկը գըցել նրան, ապա դա էլ մարմնից բարձրացող անտես գոլորշու հետ թեթև ու հեշտ ցընդեց: Դա նրա հույսն էր, բայց այնքան հեռու մնաց նրանից, որ թվաց, թե եթե հանկարծ ուզի էլ դեպի այդ հույսը գնալ, չի կարողանա:

Նա այդ առավոտ հպարտ, հանգիստ ու դաժան վազում էր ձյուների վրայով և երկու գյուղերի արանքից սահող բքի մեջ սովից չէր ոռնում, որովհետև դա գործ չէր, մեկ, և Արութիկը կարող էր հրացանը հետը վերցնել, երկու:

Արութիկը հետը հրացան չէր վերցրել: Գետնից մինչև երկինք ամբողջ բարձրությամբ պտտվում էր անծայր ու մոլեգին բուքը: Արութիկը խոշոր-խոշոր քայլում էր ձյան ու բքի միջով, ընկերները գալիս էին ետևից, և ահա-ահա դասը պիտի սկսվեր: Բքի հզոր թափի մեջ Արութիկը գնում էր գլխաբաց, ծընոտը օձիքից բարձր, թեթև ու ամուր քայլով, և բքի միջով մի սև մարմին սուրաց ու ընկավ նրա առաջ, հինգ քայլ հեռու: Բուքը մառախուղի գույն ուներ, և տղաների ու գայլի այդ խմբում ոչ մեկը դիմացինին մանրամասն չէր տեսնում: Բայց Արութիկը զգաց գայլին և անմիջապես հասկացավ, որ դա իրենց գոմի գայլն է: Նրանք իրար նոր էին տեսնում բացահայտ ու դեմդիմաց և անմիջապես դուրս եկան սիրուն երևակայությունների մշուշից:

Նա գիտեր իրենց գայլին, նա նրա վրա հրացան չէր բացել, նա մորը պատմել էր գայլի մասին և չտեսնելու տվել գայլի թաքուն թըռիչքները դեպի իրենց գոմի երդիկը: Նա այնտեղի հետքերը հանդերի ճանապարհի շան գզվռտոցի ու հետքերի տեղ էր դրել և գիտեր, որ այդ գայլը խեղճ է, կաշիուոսկոր, քաղցած և ձյան խորքով ամեն գիշեր Սուրբ Հովհաննես սարի տակի ձորից հասնում է իրենց գոմի մոտ՝ մինչև դեզի տակ, և դրանից այն կողմ չի անցնի:

Գայլը միայնակ էր, խոշոր ու քաղցած, հավերժական-հավերժական ուժասպառ ու ամեն գիշեր փոքրիկ ու անարժեք խորամանկություններով դանդաղորեն գնում էր դեպի իր նպատակը: Նա եզան համբերություն ուներ, որով պիտի դանդաղ-դանդաղ, բծախնդիր մտածված ու անվտանգ հասներ իր նպատակին: Նա գիտեր Արութիկին, նրա վրա խոտի նուամենայնիվ, կարողանում էր պահպանել սառը, վրեժխնդիր կատաղության սթափ աչքը: Արութիկը այդ ժամանակ մի քայլ առաջ գնաց, բայց որովհետև գայլը դեռ անշարժ էր, համարձակ ու վճռական, նրանց ուժերը շատ թաքուն, շատ խոր մի նախազգացումով երկուսն էլ հաշվեցին ու հավասար գտան:

Դա անզիջում պահ էր: Դաժան, չար:



դեզի մոտ նենգորեն չէր հարձակվել: Մինչև առավոտի այդ պահը հեռացել էր դեզի մոտից, թաքցրել էր իրեն և ցույց տվել, թե՝ իբր շներն են խոր գիշերվա անհայտ մի ժամի գզվռտել, և դրանք իր հետքերը չեն:

Իր այդ իրարանցման մեջ Արութիկը կարծես հավաքում էր մի ուժեղ, հսկայական թափ, և դրա հախուռն կուտակման մեջ, այ-

Փայլուն մի կատաղություն բարձրացավ Արութիկի միջով, և վճռականությունից մարմինը դարձավ քարի նման պրկված: Գայլը իրեն գրգռելով ծնգծնգացնում էր ու հետըզհետե ավելի ամրացնելով՝ ալիք-ալիք ցցում մազերը: Նրանց աչքերը ծակում էին միմյանց ու զրնգուն փայլում: Նրանց շուրջը սուրացող բքի մեջ ընդհանուր մի շրջագիծ կազ-

մած անշարժ կանգնել էր կատաղության կարծր ամպը: Գայլը մի քիչ ետ տողաց և ետևի ոտքերը խրեց ձյան մեջ:

Տղաների ու աղջիկների խումբը մոտենում էր, և նրանցից ոչ ոք գայլին դեռ չէր տեսել:

— Արութի՜կ,— իբր կորածի որոնելով՝ զըվարթ ու հրաշալի կանչում էին նրանք բքի խորքից: Արութիկը դա չլսեց, բայց գիտեր, որ աղջիկները գայլից ապահով էին, որովհետև իր լայն ու ամուր թիկունքը առջևում կար, հետո կային էլի տղաների թիկունքներ, ու աղջիկները դրանցից հետո էին:

Գայլը այդ ձայները լսեց, Արութիկի հոտից բացի ուրիշ շատ մոտիկ հոտեր առավ, և բքի մթան մեջ տեսավ բոլորի ճոճվող ու օտար ու ուժեղ, իրեն չնկատող մարմինները:

Նրանք հեռու էին, բայց մոտենում էին: Գայլի մռութի, ճակատի և կողերի մազերը փերթ-փերթ ձյուն էին բռնել:

Նրա մարմինն ու վճռականությունը մաքուր դատարկ էին, վճռական կռվի թափը դեռ զուտ կատաղություն էր, և արհամարհանքը ուղղակի սողոսկելով, մազերին կպած ձյան պես ոչ մի կերպ չպոկվելով՝ թաքուն ու անպայման հաղթող բարձրացավ: Աննկատելի ու մանր ցրվեց վճռականությունը և անճշան ցավերի պես համատարած նստեց միանգամից վերադարձած հիշողությունների ու հին, արդեն անկարևոր խորամանկությունների վրա:

Այլևս դժվար, անհնարին էր թվում մի քանի պահ հետո գալիք թռիչքը, արդեն կասկածանքի նուրբ քողով էր պարուրվում դրա պատկերացումը, և այդ տատանման մեջ նա համենայնդեպս մի վհատ թռիչք արեց դեպի Արութիկը: Արութիկը ճկուն կողքի թռավ, ու նրա ծանր պոկված քացին հասավ գայլի համարյա քամակին՝ պոչից մի քիչ վերև: Գայլը անձև թավալելով ընկավ ձյան վրա ու խեղճ-խեղճ կլանչեց:

Բայց նա դեռ լրիվ չէր հանձնվել: Պարտվածի թարմ, վհատ կատաղությամբ մի մոլեգին, երկար պտույտի գնաց Արութիկի ու ետևից մոտեցող նրա ընկերների շուրջը: Դեռ ուժ կար, և հույսը քաշում էր:

Արութիկը կանգնած՝ իր իսկ հարվածից ոտքերի տակ տափակեցրած շեշտակի ու կտրուկ հետքերն էր անիմաստ դիտում, և գայլի հազիվ երևացող հեռու պտույտը փախուստի տեղ դրեց: Ընկերների հեռու կանչն ու գայլի ժնգժնգացնող, վճռական տեսքը, կտրուկ թռիչքն ու անձև թավալելով ընկնելը դեռ անգիտակից, բայց մանրամասն ու ամուր դրոշմվելու պես նստում էին նրա հայացքում և ճնշող իջնելով՝ շերտ առ շերտ անցնում դասավորվելու:

Ընկերները շուտ մոտեցան, նրանց աղմուկը բարձր ու հրապուրիչ էր, և գայլի վերադարձը քիվից ընկնող սառցալուլայի պես փըշըրվեց: Նա իր վերադարձի հեռուներում մոլեգնորեն պտույտներ արեց, կատաղությունից փրփրած ժնգժնգաց ցուրտ բքի մեջ:

Իր ողորկ հեռուներում գայլը դանդաղ ու խռովածի պես քարշ գալով հեռացավ բքի մեջ ու նվաստ ռռնաց: Եվ բարձր ձյունով ծածկված հանդերի ամայության մեջ, անորոշ հեռուներից, գայլի դողդոջուն, մրմռքող ռռնոցը պտտվեց հովիտների գլխին, թափանցեց մինչև մոտիկ տները, որտեղ ասացին՝ անտերը գիշերը վնաս չտա:

Բայց մութ այդ գիշերը նա շատ համառ ու վճռական եկավ գոմի մոտ և իր անցքի վերջում, դեզի կողքին, ամուր ու անթարթ պառկեց: Նա շատ էր քաղցած, գոմը շատ էր տաք ու կուշտ, և ոչխարը խելոք պառկել էր: Այնուամենայնիվ, մի այնպիսի նախազգացում կար, երբ թվում էր, թե Արութիկը տան ահա այն անկյունից վրիժառու նայում է՝ հրացանի քիթը դեզին տնկած, և գայլը ահից ոչինչ չէր ուզում: Գիտեր, որ դանդաղ, շատ դանդաղ գնում է դեպի իր նպատակը, և երկընքից իջնող ցուրտը այդ դրսում թողել էր միայն իրեն ու գոմը:

Եվ, այնուամենայնիվ, նրա այդ մեծ նպատակի կողքին ծնվեց փոքրիկ, հենց այնպես մի աննշան գործ: Վճռական, հոյակապ, գեղեցիկ ու մահացու կռվի թաքուն նպատակը պետք էր պահպանել առօրյա մանրմունր գործերից բարձր ու անձեռնմխելի: Կարող է բնազդը, կարող է իր բոլոր սոված օրերը, կարող է թարմ հույսը նրան համոզել ու հանգստացրել էին, որ նա այդ գիշեր պիտի որ... և դա, այնուամենայնիվ, հոտ ջարդելու մեծ նպատակը չի լինելու, որովհետև այն շատ է անձեռնմխելի: Նա իր անակընկալ թռիչքի դիրքը ուղղել էր աղվեսի իբր շատ թաքուն թաքստոցի վրա և նրա մի կաթիլի չափ անցքով կլանված՝ ճշտում էր աղվեսի մարմնի ենթադրյալ տարածությունը: Նրա մորթին սատկածի մորթու նման անշարժ էր, աչքերը սառույցի նման ողորկ ու լուռ էին, և շունչը երկնքից իջնող պաղ ցուրտ էր: Հարմարության ու միամտացնելու այդ դարանակալ, կենտրոնացված սպասումը այնքան խորն էր ու միագիծ, որ նրա վրա իջել էր հանգստության մի թմրեցուցիչ ապահովություն:

Նա փորձված և հին գայլ էր:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Մեխիկոն իրավամբ համարվում է Լատինական Ամերիկայի ամենագեղեցիկ քաղաքներից մեկը: Այն մեր մոլորակի ամենախիտ բընակեցված քաղաքն է՝ ունի մոտավորապես 17 միլիոն բնակչություն: Հայտնի է նաև, որ Մեխիկոն աշխարհի ամենաբարձր լեռնային մայրաքաղաքներից մեկն է: Այս երկու հանգամանքները նպաստում են քաղաքում օդի աղտոտությանն ու թթվածնային սովին: Պատկերացրեք՝ բարձըր լեռնային նոսր օդ, 30 տոկոս թթվածնի պակասություն, դրան ավելացած 30 միլիոն ավտոմեքենա, 7 հազար դիզելային ավտոբուսներ, որոնց արտամղած գազը հենց նոսր օդի պատճառով երկու անգամ ավելի թունավոր է, քան հարթավայրային քաղաքներում, և ի վերջո, քաղաքի և շրջակայքի 130 հազար հիմնարկ-ձեռնարկությունները:

Երկրի Սենատը ամենախիստ միջոցներն է ձեռնարկել քաղաքի մթնոլորտը աղտոտողների դեմ, այն է՝ 90 հազար դոլար տուգանք՝ առաջին խախտումը թույլ տալու դեպքում, և կրկնելիս՝ ազատազրկում՝ ընդհուպ մինչև բանտարկություն...

МИՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Երգ ջրերին

Հե՜յ, գարնան ջրեր,
Հորդառատ ջրեր,
Զվարթ երգեցեք կանաչ դաշտերում,
Զարկեցեք գույն-գույն թմբուկներ, փողեր՝
Թող զնգա սիրտը ամեն մի ծաղկի:

Հե՜յ, ամռան ջրեր,
Աստղառատ ջրեր,
Ուրախ երգեցեք պլված դաշտերում:
Եվ խոտեր հագեք և առավոտներ,
Ծաղիկը թռչի, թռչունը ծաղկի...

Հե՜յ, աշնան ջրեր,
Տաքուպաղ ջրեր,
Անվերջ երգեցեք դեղին դաշտերում,
Տերևով ծածկեք մարմինները ձեր,
Զուգվեք զարդերով անձրևների:

Հե՜յ, ձմռան ջրեր,
Ցամաքած ջրեր,
Երգեք վերջինը ճերմակ դաշտերում,
Հոգնած եք, քնեք, մի օր կզարթնեք
Ղողանջների մեջ արծաթ զանգերի...

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ




ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# «Սիրով մնաց Սայաթ-Նովեն»

Սայաթ-Նովան ապրեց և ստեղծագործեց 18-րդ դարի Թիֆլիսում, այն Թիֆլիսում, որի մասին Թումանյանն ասում է. դա «մի յուրահատուկ աշխարհ էր, որի մեջ եկել միացել էին կովկասյան ժողովուրդները՝ ամենքն իրենց առանձնահատուկ կյանքով ու երանգով, և հորինել էին ազգերի մի վերին աստիճանի գրավիչ ու հետաքրքրական խառնուրդ ու կյանք...»: Այստեղ անպակաս էին երգն ու երաժշտությունը, հավաքույթներն ու խնջույքները, այստեղ իրենց արվեստով մրցում էին Կովկասի աշուղները: Եվ երգով ու երաժշտությամբ հագեցած այդ քաղաքում Սայաթ-Նովան, որ ստեղծագործում էր Անդրկովկասի երեք ժողովուրդների լեզուներով՝ հայերեն, վրացերեն և ադրբեջաներեն, հռչակվեց, հրավիրվեց վրաց թագավորի պալատը, դարձավ պալատի զարդը: Բայց այստեղ բանսարկությունների ու դավերի զոհ դառնալով՝ հեռացվեց պալատից և կյանքն ավարտեց իբրև կրոնավոր:

Հայ գրականության պատմության մեջ Սայաթ-Նովային համարում են միջնադարի վերջին մեծ բանաստեղծը: Մեզ նրանից բաժանում է երկու հարյուրամյակ: Երկու դարի հեռավորությունը չի խանգարում, որ Սայաթ-Նովան մնա ամենաարտամոտ երգիչը: Նա եղավ և մնում է մեծագույն երգիչներից ոչ միայն հայ, այլև համաշխարհային քնարերգության մեջ:

Սայաթ-Նովայից առաջ արդեն մի քանի հարյուրամյակ հայերեն երգեր էին ստեղծվում սիրո մասին: Նա ժառանգեց այդ երգերի հարուստ ավանդույթները: Բայց, ինչպես ինքն է իր մասին ասում, նրա «գիրը ուրիշ գրեն է», ինչպես նրա սերն է՝ ոգեղեն, խորը, տանջալից: Նրա սիրած կինը բարձրագույն էակ է, բոլոր կատարելությունների մարմնացումը: Նրան երգելու համար բանաստեղծը ոգևորության մեջ շռայլ, շքեղ համեմատություններ ու բնո-

րոշումներ է անում: Այդ բոլորի մեջ ցոլանում է նրա վառված հոգին․

**Յիս մե ղարիբ բլբուլի պես, դուն օսկե ղափազի նըման․**
**Էրեսըս դիր վուտիդ տակին՝ անց կաց փիանդազի նըման․**
**Յար- քիզիդ խոսիլ իմ ուզում՝ շահի իլթիմազի նըման.**
**Աջայիբ սուրաթի տեր իս՝ ռանգըդ է գուլգազի նըման:**

(Ես նման եմ պանդուխտ սոխակի, դու՝ ինչպես ոսկե վանդակ, Երեսս դիր ոտքիդ տակ, անց կաց ինչպես ուղեգորգի վրայով, Յար, քեզ հետ ուզում եմ խոսել, ինչպես շահին են դիմում աղերսանքով, Զարմանալի դեմք ունես, երեսդ վարդագույնի նման): Միջնադարյան բանաստեղծության մեջ ո՛չ սոխակը, ո՛չ ոսկե վանդակը նորություն չէին: Բայց այս շիկացած ու վերասլաց զգացմունքը միայն Սայաթ-Նովայինն էր:

Այսպես, շռայլ, շքեղ համեմատություններով ներկայացնում է իր զգացածը, բայց սիրտը դարձյալ չի հովանում: Փնտրում է նորանոր պատկերներ ու համեմատություններ, ինչպես նրանից մի քանի դար առաջ ջերմեռանդ հավատացյալները բառեր էին փնտրում աստծու մեծությունը և իրենց խոնարհությունը ցույց տալու համար:

**Յար, մըտիլ ես բաղչի մեչըն, աջայիբ սեյրան իս անում.**
**Ծուղկըդ արեգակի նըման է՝ տեսնողին հեյրան իս անում.**
**Զիգարըս կըրակ իս տըվի, էրվում իմ՝ բիրյան իս անում.**
**Վունց մե գոզալ չի ունեցի՝ էտ քո արած նազի նըման:**

(Յար, մտել ես այգի, զբոսնում ես, Ծողքդ արեգակի նման է, տեսնողին ապշեցնում ես, Սիրտս կրակ ես տըվել, այրվում եմ, դու խորովում ես ինձ, Ոչ մի գեղեցկուհի դեռ չի ունեցել այդ քո նազերը): Երգչի բորբոքված երևակայության մեջ սիրուհու յուրաքանչյուր քայլը հրաշք է: Թիֆլիսի բարբառի կապակցությունները միշտ չէ, որ հնարավոր է նույնությամբ վերարտադրել մեր այսօրվա գրական լեզվով: Տեսեք, ինչ հետաքրքրական արտահայտություն է՝ «աջայիբ սեյրան իս անում», այսինքն՝ գեղեցկուհու զբոսանքն էլ «աջայիբ» է, զարմանալի, հրաշալի: Գեղեցկուհին արևի պես շողարձակում է՝ ապշեցնելով բոլորին: Եվ, իհարկե, նա լավագույնն է մինչ այդ եղած բոլոր գեղեցկուհիների մեջ:

Զգացմունքի շիկացածությունը չի իջնում, ընդհակառակը, նոր համեմատությունները գալիս, ավելի ու ավելի են ընդգծում այն, և աշուղական ու ժողովրդական երգերի ավանդական պատկերները, մանավանդ վերջինը՝ «ծովի պես ուրդան իմ տալի, գըժվիլ իմ Արազի նըման», այնքան լավ են ցուցադրում Հովհ․ Թումանյանի բնորոշմամբ՝ այս իսկապես, որ մեծ սիրահարի ապրումների ուժն ու խորքը:

Այդպիսին են բանաստեղծի բոլոր սիրային երգերը: Նրանք տարբեր երանգներ ունեն՝ գովք, աղաչանք, ցավ և այլն (կամ այս բոլորը միասին): Բայց բոլոր դեպքերում զգացմունքը լարված է այնքան, որ թվում է՝ սիրահարն իսկապես այրվում է նրա բոցերում:

Թումանյանը մի բանաստեղծություն է նվիրել Սայաթ-Նովային, որը վերջանում է այս տողով․

**Սիրով մնաց Սայաթ-Նովեն:**

Հիրավի այդպես է: Ժողովրդի սրտում «սիրով մնաց Սայաթ-Նովեն»:



# Շախմատի աշխարհի 13 չեմպիոնները

Շախմատի աշխարհի առաջնության պաշտոնական առաջին խաղը տեղի է ունեցել 1886 թ.: Չեխ Վիլհելմ Ստեյնիցը 12:7 հաշվով առավելության հասավ Ցուկերտորտի նկատմամբ և հռչակվեց աշխարհի առաջին չեմպիոն: Հետագա ութ տարիներին ևս նա կարողացավ պահպանել այդ տիտղոսը. 1889 թվականին 10:6 և 1892 թ. 12:10 հաշվով հաղթեց Չիգորինին, 1890 թ.՝ Գունսբերգին, և դարձավ աշխարհի չեմպիոն:

Այսպիսով, Վիլհելմ Ստեյնիցը ութ տարի պահպանեց աշխարհի չեմպիոնի բարձր տիտղոսը:

Աշխարհի 2-րդ չեմպիոնը գերմանացի Էմանուիլ Լասկերն է: Նա յոթ անգամ նվաճել է չեմպիոնի կոչումը, քսանյոթ տարի անընդմեջ պարտության մատնելով Մարշալին, Տարաշին, Յանովսկուն, երկու անգամ Շլեխտերին: 1921 թ. աշխարհի երրորդ չեմպիոն հռչակվեց կուբացի նշանավոր գրոսմայստեր Խոսե-Ռաուլ Կապաբլանկան, որը 9:5 հաշվով հաղթեց աշխարհի յոթակի չեմպիոն Լասկերին:

1927 թվից սկսվեց ռուս նշանավոր շախմատիստ Ալեքսանդր Ալյոխինի հաղթարշավը: Նա չորս անգամ դարձավ աշխարհի չեմպիոն՝ պարտության մատնելով սկզբում Կապաբլանկային, այնուհետև՝ երկու անգամ՝ Բոգոլյուբովին: Իսկ 1935 թվին նա պարտվեց հոլանդացի Մաքս Էյվեից, բայց երկու տարի անց ռևանշի հասավ նրա նկատմամբ և շահեց մրցամարտը:

Սովետական շախմատիստներից աշխարհի առաջին չեմպիոնը եղավ ականավոր գրոսմայստեր Միխայիլ Բոտվիննիկը: 1948 թ. Մոսկվա—Հաագա մրցամարտի ժամանակ հինգ շախմատիստներ հնգական շրջանով հանդիպեցին իրար հետ: Բացի Բոտվիննիկից, մասնակցում էին Վասիլի Սմիսլովը (ՍՍՀՄ, աշխարհի ապագա չեմպիոն), Պաուլ Կերեսը (ՍՍՀՄ), Սամուիլ Ռեշևսկին (ԱՄՆ) և Մաքս Էյվեն: Բոտվիննիկը փայլուն անցկացրեց այդ մրցաշարը և 14 միավորով (10—8—2) գրավեց առաջին տեղը: Նա չորս անգամ դարձավ աշխարհի չեմպիոն, ու թեև 1957 և 1960 թվերին պարտվեց Սմիսլովից և Տալից, այնուամենայնիվ, ռևանշ մրցաշարերում երկուսին էլ հաղթելով՝ վերադարձրեց աշխարհի չեմպիոնի բարձր կոչումը:

Աշխարհի 9-րդ չեմպիոն հռչակվեց հայազգի նշանավոր գրոսմայստեր Տիգրան Վարդանի Պետրոսյանը, որը փայլուն կերպով նախ հաղթեց Միխայիլ Բոտվիննիկին, իսկ երեք տարի անց հաղթեց Բորիս Սպասսկուն, սակայն 1969-ին պարտվեց նույն Սպասսկուց: Սպասսկին այդ կոչումն իր ձեռքում պահեց ընդամենը երեք տարի:

1972 թվին ամերիկացի գրոսմայստեր Ռոբերտ Ֆիշերը, 12:8 հաշվով հաղթելով Սպասսկուն, դարձավ 11-րդ չեմպիոնը:

Աշխարհի 12-րդ չեմպիոնը դարձավ երիտասարդ գրոսմայստեր Անատոլի Կարպովը:



Ֆիշերը հրաժարվել էր խաղալ, և շախմատի միջազգային ֆեդերացիան (ՖԻԴԵ) հաղթանակը շնորհեց Անատոլի Կարպովին: Այնուհետև Անատոլի Կարպովը երկու անգամ պայքարի մեջ մտավ չեմպիոնական տիտղոսը պահպանելու համար՝ 1978 թվին նա 16:15, իսկ 1981 թվին 11:7 հաշվով հաղթելով հակառակորդին, պահպանեց աշխարհի չեմպիոնի կոչումը:

Աշխարհի 13-րդ նոր չեմպիոնը այժմ ամենաերիտասարդ գրոսմայստեր 22-ամյա Գարրի Կասպարովն է:

Շախմատի աշխարհի առաջնության եզրափակիչ մրցամարտերում աշխարհի 13 չեմպիոնների անհատական, տեխնիկական արդյունքները.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1. Ստեյնից (1886—94) | 115 խ | 43 հ | 29 ո | 43 պ | 57½ մ |
| 2. Լասկեր (1894—1921) | 113 | 53 | 44 | 16 | 75 |
| 3. Կապաբլանկա (1921—27) | 52 | 7 | 39 | 6 | 26½ |
| 4. Ալյոխին (1927—34), 1937—48) | 140 | 43 | 73 | 24 | 79½ |
| 5. Էյվե (1935—37) | 56 | 13 | 24 | 19 | 25 |
| 6. Բոտվիննիկ (1948—57), (1958—60), (1961—63) | 147 | 46 | 90 | 11 | 91 |
| 7. Սմիսլով (1957—58) | 59 | 18 | 24 | 17 | 30 |
| 8. Տալ (1960—61) | 42 | 11 | 19 | 12 | 20½ |
| 9. Պետրոսյան (1963—69) | 69 | 13 | 45 | 11 | 35½ |
| 10. Սպասսկի (1969—72) | 68 | 12 | 41 | 15 | 32½ |
| 11. Ֆիշեր (1972—1975) | 21 | 7 | 11 | 3 | 17½ |
| 12. Կարպով (1975—85) | 122 | 20 | 87 | 15 | 63½ |
| 13. Կասպարով (1985) | 72 | 8 | 56 | 8 | 36 |

## ԺՊԻՏՆԵՐ

● Միաժամանակյա խաղի սեանսը մոտենում էր ավարտին: Իրեն պարտված ճանաչելով, սիրող շախմատիստը հարցրեց Կապաբլանկային.

— Ի՞նչ կարծիք ունեք իմ խաղի մասին:

— Ամենալավ,— պատասխանեց չեմպիոնը:— Բայց դուք ինչո՞ւ ամբողջ պարտիայի ընթացքում չզարգացրիք ձիերը:

— Ախր, գիտե՞ք, ես չգիտեմ դրանց քայլերը:



● Մի անգամ Ալյոխինը նստած էր սրճարանում և հետևում էր սիրողների պարտիաներին: Երկրպագուներից մեկը առաջարկեց խաղալ: Աշխարհի չեմպիոնը համաձայնեց, բայց ասաց, որ խաղալու է առանց նավակի:

— Ինչպե՞ս թե,— զարմացավ նրա մրցակիցը:— Չէ՞ որ դուք ինձ բոլորովին չեք ճանաչում:

— Հենց այդ պատճառով,— հանգիստ պատասխանեց Ալյոխինը:

● Բուենոս-Այրեսում կայացած միաժամանակյա սեանսի պարտիաներից մեկում Ալյոխինը, քայլն արագ կատարելուց հետո, մոտեցավ հաջորդ տախտակին:

— Մաեստրո,— հուզված բացականչեց նրա հակառակորդը,— ես երեք քայլից հետո ձեզ մատ եմ հայտարարում:

— Հանգստացեք, սինյոր,— ժպտաց Ալյոխինը,— ես մեկ քայլ առաջ եմ մատ անում:

**ԱՐՄԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ**

# Տառեր

Հավաքովի տառեր պատրաստելու միտքը երբ ծագեց, հիշեցի Մեսրոպ Մաշտոցին, պատկերացրեցի, թե ինչպես նա գիշեր ու ցերեկ հանգիստ չի ունեցել, շարունակ տառեր է նկարել, ձևից ձև փոխել, անուն դրել ու արտասանել։

Ո՛ր տառը ո՛ր տառից է ձևված, կամ ո՛ր մեկը որի՛ց է բխել. այդ մտքերի հետ քնում էի, այդ մտքերի հետ արթնանում։

Առաջին հավաքովի այբուբենիս չափերը փոքր էին, այն տուփը, որի մեջ հավաքում էի, 13×26×48 մմ չափսի էր։

Մասշտաբը մեծացրի, դարձրի 13×37×84 մմ և հետո ցույց տվեցի շատերին։ Հավանեցին։

Իսկ այժմ ներկայացնում եմ «Պիոներ» ամսագրի ընթերցողների ուշադրությանը, առաջարկելով նրանց, իրենց փոքրիկ քույրիկներին ու եղբայրներին գրաճանաչ դարձնելու համար, ցույց տվածի օրինակով պատրաստել հավաքովի տառեր ստվարաթղթից, թիթեղից, տախտակից և հարմար ինչ նյութ որ ունենաք։ Թող փոքրիկները խաղան դրանցով և խաղալու ընթացքում էլ գրաճանաչ դառնան։

**ԱՍՔԱՆԱԶ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ**
**փականագործ վարպետ**




**Չափերը տրված են միլիմետրերով։ Մեծատառերը փորձեք հավաքել ինքներդ։**

# Երանուհի Ասլամազյան



«Ինքնանկար»



«Դեկորատիվ ափսե»

ՀՍՍՀ վաստակավոր նկարիչ Երանուհի Ասլամազյանի ստեղծագործությունը ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ Յու. Պիմենովը բնութագրում է այսպես. «Նրա կտավներում պատկերվածը ո՛չ Սարյանի վառ Հայաստանն է, ո՛չ իր քրոջ՝ Մարիամի տոնական Հայաստանը, այլ այդ նույն Հայաստանն է, միայն թե ավելի խիստ գույնով և ավելի զուսպ տոնով»:

Արդեն համարյա կես դար է, որ ստեղծագործում է նկարչուհին: Նրա ճանապարհն սկսվել է Լենինականի մոտ գտնվող մի փոքրիկ գյուղից՝ Բաշ-Շիրակից, ուր ծնվել է նա 1910 թվին: Մինչև 18 տարեկանը սովորել է Լենինականի գեղարվեստի ստուդիայում և Երևանի գեղարվեստա-արդյունաբերական տեխնիկումում: Այնուհետև ուսումը շարունակել է Մոսկվայում և Լենինգրադում:

Նա շրջագայել է Լիբանանում, Սիրիայում, Եվրոպայում, հասել Հնդկաստան, Ցեյլոն ու Ճապոնիա, և այլուր: Ուր էլ գնացել է Երանուհի Ասլամազյանը, նրա հետ է եղել իր Հայաստանը, վերադարձել է՝ հետը բերելով այդ երկրների բույրը իր նոր կտավներում:

Երևանում, նկարչի տանը կազմակերպված նկարչուհու նոր, անհատական ցուցահանդեսը այցելուներին համակեց տոնական այն բարձր տրամադրությամբ, ինչպես որ լինում է ամեն անգամ ճշմարիտ, խորունկ արվեստին հաղորդակցվելիս:



Լուսանկարը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅ-ՎԱԶՅԱՆ Վ.։

Ինդեքս՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.